# ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ՀԱՅ ՏԱՂԱՍԱՑՔ

Ա.

# ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ

ԳՆՈՒՆԵԱՑ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---




# ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԳՆՈՒՆԵԱՑ

ԵՒ

# ԻՒՐ ՏԱՂԵՐԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1910.

# ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ

## ԳՆՈՒՆԵԱՑ

ԵՒ

## ԻՒՐ ՏԱՂԵՐԸ

---

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1910.

# Ա Զ Դ

—

Միջնադարեան հայ բանաստեղծներու նուիրուած սակաւաթիւ հատորներու վրայ կու գայ աւելնալ Գնունեաց բանաստեղծ եպիսկոպոսի տաղերու հրատարակութիւնը: Այս տեղ ամփոփուած են 10 Տաղ եւ 12 Կաֆայ. բայց ապահովապէս, ինչպէս վստահ ենք, այս աղքատ թիւը չի ներկայացըներ Զաքարիայի բանաստեղծութեանց լիակատար հաւաքածոն, այլ անոնցմէ դուրս կան ուրիշներ ալ, որոնք կը սպասեն հրատարակող ձեռքի:

Ներկայ հրատարակութիւնս լոյս տեսած է կանխաւ “Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթի մէջ[1]. արտատպութիւնս ճոխացած է միայն Բառարանով, որ կարեւոր էր լաւ իմանալի ընելու համար տաղերը՝ տաճիկ, արաբ եւ պարսիկ լեզու-

[1] Հանդ. Ամս. 1909, թ. 8, էջ 231—238, թ. 9 10, էջ 279—288, թ. 11, էջ 341—345:

ներու անձանօթ ընթերցողներու: Բառարանին մէջ առնուած են այն ամէն օտար՝ փոխառեալ բառերը, որոնք կիրարկուած են Ջաքարիայէն. մուծած ենք նաեւ այն հայերէն բառերը, որոնք կամ իբրեւ ռամկօրէն դժուարիմանալի են, եւ կամ Ջաքարիայէն կերտուած են: Փոխառեալ բառերու ստուգաբանութեան համար աչաց առջեւ ունէինք J. Th. Zenkerի Dictionnaire turc-arabe-persan (տպ. Leipzig 1866—1876) երկհատոր չքնաղ գործը:

Ներածութեան մէջ (էջ 17—18 ծան.) մատնանշած էինք թէ Թ. 10 Վասն ղարիպութեան տաղն ունի նմանութիւններ "Վայրինասուն մի եմ քնած ու քերած,, եւ "Հոգի միասեր ղարիպ,, տաղերու հետ, որոնց հասարակաց աղբիւրը դժուարին է ցոյց տալ: Առ այս պէտք է յաւելուլ այժմ, թէ Թ. 10 տաղը ունի նաեւ նոր խմբագրութիւն մը Տէր Մելքիսեդեկ անուն տաղասացի մը ձեռօք մեր Թ. 466, թղ. 291ա Ձեռագրին մէջ, որ դժբախտաբար սակայն շատ վատ օրինակ է ու թերի ունի վերջաւորութիւնը. այս տեղ կը հրատարակեմ տաղս ալ իբրեւ Յաւելուած՝ ըստ բաղձանաց Մեծ. Նորայր Բիւզանդացւոյ, որ բարե-

կամաքար ուշադրութեան յանձնեց զայս (Թուղթ 29 Հոկտ.)։ Տէր Մելքիսեդեկ ընդլայնած է Զաքարիայի միտքը՝ օգտուելով նաեւ Մ. Նաղաշի "Ղարիպի կեանքն է լալի", եւ տաղէն, ուսկից քառակամ տողեր ալ կան (Հմմտ. Հրտ. Կոստանեանցի, էջ 37—38)։

Եթէ պարագայք ներեն, մտադիր ենք հետզհետէ ի լոյս ընծայել նաեւ Զաքարիայի ժամանակակից միւս բանաստեղծներու տաղերը մեր Ձեռագրաց համաձայն։ Բաղձալի էր որ չկասէին ձեռնարկութեան մէջ արդէն յայտնի բանասէրք ալ, եւ որ յառաջ յերեւան ելլէին Միջնադարեան հայ բանաստեղծներու չքնաղ ստեղծագործութիւնք իրենց ամբողջութեան մէջ։

Վիեննա, 24. Նոյ. 1909։

ՀՐԱՏԱՐԱԿԻՉԸ

# ՑԱՆԿ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Վեշտասաներորդ դարու հայ անծանօթ տաղասացներէն է Զաքարիա, ծաղկած Աղթամարայ ջրաւէտ ափանց վրայ, ուսած եւ ապրած բանաստեղծ շրջանակի մը մէջ։ Իր կենսագրութենէն ունինք բարեբախտութեամբ բաւականաչափ կարեւոր գծեր։

1. Հայրենեօք էր Զաքարիա Բզնունեաց ափանց վրայ հաստատուած Խժիժ գիւղէն[1], եւ ասկէ առեալ կը կոչուի “Խժըժեցի„. բնակութեամբն թէ դրացիութեամբն յայտնի չէ, իր կենաց համար նշանակալից եղած է Լիմ անապատն ալ, եւ կը յորջորջուի երբեմն “Լմեցի„[2]։ Զաքարիա տոհմով կ'իջնար Հայոց

[1] Հմմտ. վարը Թ. 1 տաղը։ Խժէժ, այժմ Խժէժէ կամ Խժէշէ կոչուած, գիւղ մ'է, որ կը գտնուի “Վան-Տոսպ գաւառակի Թիմարայ մասին մէջ, Բզնունեաց ծովակի եզերքը, Ամկայ բերդին արեւելեան եւ Լմայ ջրհանի արեւմտեան կողմը։ Ունի Ս. Ստեփանոս անուն եկեղեցի մը եւ 100էն աւելի տուն,„ ըստ Ս. Էփրիկեանի՝ Բնաշխարհիկ բառարան. Բ. 169։ Կամ ըստ Գ. Շէրէնցի՝ Սրբավայրեր, տեղագրութիւն Վասպուրականի-Վանայ նահանգի գլխաւոր եկեղեցեաց, վանօրէից եւ ուսումնարանաց. Տփղիս 1902, էջ 74, Կտուց կղզւոյ Ալիւր գիւղի շուրջն գտնուող 4 գիւղերէն մին է։

[2] Հմմտ. վարը Թ. 4 տաղը։

պատմութեան մէջ անուանի Պռօշեանց տոհմէն[1]. եւ արենական կապ մ'ունեցած կը թուի ԺԴ դարու բանաստեղծ Խաչատուր Կեչառեցւոյ հետ[2]։ Ծնունդն պէտք է զետեղել ԺԵ դարու երկրորդ կիսուն հաւանականաբար։ Ծնողաց անունները յայտնի չեն, բայց ունեցած է նաեւ եղբայրներ. զորոնք իւր մէկ յիշատակարանին մէջ յիշել կը խնդրէ։

2. Բարձրագոյն դաստիարակութիւնն եւ ուսումներն առած է առ ոտս Յովսէփ, Եսայի եւ Գրիգոր վարդապետաց։

Յովսէփ վարդապետ ապահովապէս այն Յիշատակագիրն է, որուն ձեռքէն գրուած կը յիշատակէ Հ. Պոտուրեան[3] երկու յիշատակարան յամի 1512 «ձեռամբ անիմաստ գրչի Յովսէփի»։ Ասոր ձեռքէն է անշուշտ նաեւ այն

---

[1] Այս եւ յաջորդ կենսագրական ծանօթութիւնքս մեծաւ մասամբ կը քաղենք Զաքարիայի յիշատակարաններէն, զորոնք ունինք Ստոյն Կալիսթենեայ Աղեքսանդրի վարուց երկու ինքնագիր ձեռագրաց մէջ։ Հմմտ. այս մասին առ այժմ Հ. Յ. Տաշեան՝ Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի. Վիեննա 1892, էջ 90 եւն։

[2] Ձեռ. Մատենադարանիս, Թ. 98, թղ. 74ա. (Հմմտ. Տաշեան՝ անդ, 125). «Որք լսէք զաղերսողորմ բարառնութիւնս՝ զարմարող սորին զխաչատուր կեչառեցին, եւ է նոյէն շնորհալից Զաքարիայ եպիսկոպոսին՝ գծողս եւ նկարողս Աղէկսանդր գրողս յիշել ի Տէր։»

Եւ այլուր նոյն ձեռագրին մէջ (անդ. թղ. 25բ). «Զվարդապետն աստուածազարդ, զխաչատուրըն կեչառեցի, 'ւ ի շառաւիղէ նորին՝ Զաքարիայ անմար Գընունցի, Բազում ջանիւ նորոգել զյիշատակ հարանցն իմ նախնի»։

[3] ԲԶՄ. 1905, էջ 492։

փոքրիկ տաղն, զոր Կ. Կոստանեանց 1623ին գրուած Սաղմոսարանի մը մէջ գտած հրատարակած է[1]։ Վախճանած է Յովսէփ 1544ին մեծ սուգ թողլով Զաքարիայի։ Շատ անձուկ կապերով զօդուած կը թուի Զաքարիա իր ուսուցչին հետ, իր մէկ ոտանաւորին մէջ կ'անուանէ զանի "վարդապետ սիրալի, Տէր Յովսէփ Աղթամարցի"։ Առ սա ուղղուած կ'ենթադրեմ 1538ին յօրինուած "Զօրք անմարմնոցն" տաղը։ Յովսէփ եղած է նաեւ աշակերտակից (կամ թերեւս վարդապետ իսկ), ինչպէս կ'երեւայ, Գրիգոր Ա. Աղթամարցւոյ, որ նուիրած է առ իր սրտակիցն յամի 1524 տաղ մ'ալ սկզբնաւորութեամբ՝ "Գովեալ սուրբ հայր ոմն յարակայ[2]", որուն տներու սկզբնատառք կը յօդեն "ԳՐԻԳՈՐԻՍԷ", եւ վերջատառք "ՅՈՎՍԵՓԻՆ Է", շատ նման Զաքարիայի վերոյիշեալ տաղին, որ նմանութիւն մ'է լոկ ասոր։

Եսայի վարդապետի մասին տեղեկութիւն կը պակսի մեզի, իրեն համար օրինակած է Զաքարիա Հռոմ Աղեքսանդրի վարուց պատմութիւնն ընտիր գրչութեամբ[3]։

---

1 "Ի Յովսէփ վարդապետէ Աղթամարցւոյ ասացեալ Երկու ձեռս կայ ահագին" եւն սկզբնաւորութեամբ, ընդ ամենն 8 տող. Հրտ. Նոր Ժողովածու, Դ. Վաղարշապ. 1903, էջ 42։

2 Թ. 684, Թղ. 18ա—19ա Մատենադարանիս։ Այլուստ անծանօթ է ցայսօր տաղս։

3 Հ. Ալիշան՝ Այրարատ, 268, կ'իմանայ Հռոմ զԵսայի Նչեցի, ոչ ուղղութեամբ, ինչպէս նկատած է եւ Հ. Տաշեան՝ անդ, էջ 90 եւ 126։

Գրիգոր Աղթամարցւոյ անձն դժուար է որոշել համանուն եւ ժամանակակից Գրիգորներու մէջ: Զաքարիայի օրով ԺԶ դարու առաջին քառորդէն ծանօթ է ինձ երկու Գրիգոր՝ վարդապետ եւ աշակերտ, երկուքն ալ Աղթամարցի: Առաջինն ունի կից յորջորջանք մը՝ րաբունապետ, որ եթէ կաթողիկոսի հետ նոյնիմաստ է, Զաքարիա աշակերտած կ'ըլլայ Րաբունապետին, եւ այս դէպքին հարկ կ'ըլլայ ուսումնասիրել եւ ճշգրտել Աղթամարայ երկու Գրիգորներուս կաթողիկոսութեան անորոշ տարիները, զոր այլուր կը թողունք ի գլուխ հանել:

Նկատելով որ Զաքարիա աշակերտած է Յովսէփ եւ Գրիգոր Աղթամարցիներու, կարելի է հետեւցնել թերեւս թէ եղած է երբեմն յԱղթամար:

3. Յայտնի չէ թէ ո՛ր տարին, Զաքարիա ձեռնադրուած է եպիսկոպոս «Ամենայն Գնունեաց[1]», ասկէ առեալ մերթ կ'անուանէ ինք

---

1 Գնունեաց գաւառն կը տարածուի Վանայ հիւսիսային կողմը, ուր կը գտնուի Ամկայ բերդն, Բերկրի եւն։ Ըստ Շէրենցի (անդ) կը համապատասխանէ այժմեան Թիմարայ գաւառի սահմաններուն: Զարմանալի է որ ցայսօր առանց քննութեան մնացած է Հայոց հին պատմութեան մէջ բաւական ծանօթ ազգիս գրուած երկրին սահմանները: Անանուն Արծրունի (էջ 308) առաջին անգամ կը յիշէ Գնունեաց գաւառն Արճէշ քաղաքով (յամի 1041)․ Վարդան Պատմիչ (էջ 77) գաւառիս մէջ կը դնէ նաեւ Աղիովիտը — "Եւ սա (առ Աշոտ) բազում կալեալ ազգին Գնունեաց՝ թափել զնոսա յիսմայելացւոցն, որոյ երթեալ հազար արամբ յԱղիովիտ գաւառ, եւ առ ինքն գումարեալ զամենայն ազգն ախիւն իւրեանց, տանի բնակեցուցանէ ի Տայս": ԺԷ դարուն Առաքել Դաւրիժեցի պատմելով Եր-

զինք նաեւ "Գնունցի„: Ինքն կ՚ակնարկուի ապահովապէս յամի 1524 Մոկաց Առինչ գիւղն գրուած Աւետարանին մէջ "ի հայրապետութեան Տեառն Ներսէսի եւ յառաջնորդութեան Տեառն Զաքարիայի[1] „: Հ. Տաշեան (էջ 126) նկատելով Խ. կեչառուեցւոյ ազգակցութիւնը կը կարծէ. "Թերեւս նոյն իսկ այս Կեչառուաց վանաց առաջնորդ էր Խաչատրոյ շառաւիղէն Զաքարիա, որ եպիսկոպոս կը կոչէ ինք զինքը, եւ որուն ժամանակն որոշ չեմ կրնար գտնել:„ Ենթադրութիւնս սակայն որ եւ իցէ հիմ չունի. եւ Հ. Տաշեան կը գրէր տողերս, երբ անծանօթ էր իրեն Կրափորդեան Ձեռագիրն, որ իրաց ուրիշ մեկնութիւն տուաւ:

4. Երկար տարիներով բազմած չ՚երեւար Զաքարիա աթոռոյն վրայ. շարժառիթն անմեկնելի՝ ձեռք առած է պանդխտութեան ցուպն եւ հեռացած հայրենիքէն: Արդէն 1538ին թողուցած էր Գնունեաց սահմաններն, վասն

րուն վկային († 1655) նահատակութիւնն կը գրէ. "էր սա յաշխարհէն Վասպուրականի, ի գաւառէն Գնունեաց՝ որ այժմ ասի Ամուկ, ի գեղջէն, որ կոչի Ալիւր„ (Առաքել, 542 = Հայոց Նոր վկաներ, 467): Ինձ ծանօթ են Գնունեաց եպիսկոպոսներէն յամի 510 Պաւղոս, որ դեռ 555ին կենդանի էր (Գիրք Թղ. 42, 74), յամի 645 Դունայ ժողովոյն ներկայ էր Տէր Թէոդորոս (var. Թադէոս. Կանոնք Դունայ ժողովոյն. էջ 27), 726ին Մանազկերտի ժողովին մէջ Յովհաննէս (Հանդ. Ամս. 1905, էջ 216): Անկէ մինչեւ Զաքարիա չի յիշուիր, որչափ մեզ մատչելի աղբերք կը ներեն:

1 Հայապատում, Գ. § 385, էջ 269:

զի այդ թուականին յօրինած “Զօրք անմարմնոց„ ոտանաւորին մէջ իր մասին կը գրէ ի միջի այլոց.

“Իւսմամբ միտք իմ ի քեզ պարէ
Մոլորական եմ ի տանէ
Զաքարիայէ սա գրեալ է
Ի Թափառնիկ ոմն աղքատէ:„

Յամի 1544 կը գտնուէր Կ. Պոլիս ի Սուլիմանաստիր, երբ պատրիարքութեան աթոռն կը նստէր Աստուածատուր վարդապետ (1537—1550): Թէ յառաջագոյն արդէն ծանօթ էր Աստուածատրոյ, չենք գիտեր[1]. բայց հոս կը բարեկամանայ սիրոյ սերտ կապերով. եւ անոր խնդրանօք կ'օրինակէ Սոյն Կալիսթենեայ Աղեքսանդրի վարուց օրինակ մը՝ ընտիր գրչութեամբ, որ այժմ կը պահուի ի Մանչեստր John Rylonds գրավաճառի քով: Ասոր վրայ կը խօսինք վարը մանրամասնութեամբ: Մատենին վերջն գրած է Յիշատակարան մը եւ ոտանաւոր ընծայական մը. վերջինս յետոյ հրատարակելու մտքով, կը բերենք հոս յիշատակարանն ամբողջութեամբ[2]:

---

[1] Աստուածատուր, որ աշակերտն էր Դերջանցի Մաղաքիա վարդապետին (Ընդ. Օր. 1903, էջ 83, մահուան տարին կը դրուի 1555, կարդա՛ 1550), թերեւս հարազատ եղբայրն իսկ ըլլայ Զաքարիայի, եթէ յետագայ Յիշատակարանին “եղբայր„ պարզապէս մտերմութեան յայտարար չէ: — 1523էն ծանօթ է Աստուածատուր Մեծոփեցի մը, որուն խնդրանօք գրած է Գր. Աղթամարցի “Ծաղկունք ասեն, հերիք արա„ տաղն (Կոստանեանց՝ Գր. Աղթ. 48—53):

[2] Ցուցակն՝ անդ 157 հրատարակած է արդէն Ս. Վ. Պարոնեանի ընդօրինակութեան համաձայն, ուր սակայն

“Յիշատակարան այսմ տառի.

Փառք ամենազաւր տէրութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ: Որ ետ կարողութիւն տկարոյս՝ Զաքարիայ մեղապարտ եպիսկոպոսի, պիտակ անուն բանի խնդրողի. հասանել յաւարտ Պատմութեան աշխարհակալին Աղեկսանդրի: Որ գրեցաւ ի խընդրոյ բազմերջանիկ եւ յոքներանեան, շնորհազարդ եւ բանիբուն վարժապետի Տէր Աստուածատուր պատրիարգին. որ այժմ նստի յաթոռ հայրապետին Յոհաննու Ոսկէբերանին ի Կոստանդինուպաւլիս մեծաշուք պատուով՝ ընկալեալ զիշխանութիւն ի սուրբ յԱրփիաւորչէն մերմէ: Որ ցանկացող եղեւ այսմ կտակի. ի վայելումն անձին իւրոյ՝ բարեսիրի: Եւ յետ աստեացս յիշատակ բարի յեկեղեցի. իւրն եւ ծնողաց իւրոց. հաւրն Եղուպին. եւ մաւրն Մահպուպին. որոց Տէր Յիսուս Քրիստոս ողորմի. եւ վայելել տացէ զսա ընդ երկայն աւուրս Տէր Աստուածատուր քաւչապետին: Եւ ես Թափուրս յամենայն բարեաց զԶաքարիայ մեղապարտ եպիսկոպոսս աշակերտ շնորհազարդ Գրիգորիս կաթուղիկոսին. եւ Յովսէփ վարպետին. որ յայսմ ամի փոխեցաւ ի դասս անմահից. եւ եղեւ ինձ մեծ սուք: Եւ տեսի զփափաք եւ զսէրն Գրէրիս մերոյ՝ յանձն առի եւ Աստուծոյ աջողութեամբն կատարեցի. գրով եւ ծաղկեալ ոսկով. եւ երանգ երանգ գունով աւձտեցի սխրալիր եղբաւրս մեր Տէր Աստուածատուր պըւէտիկոսին: Արդ որք հանդիպիք սմա տեսչութեամբ. եւ կամ աւգտութեամբ ինչ իւիք. յիշեցէք ի միտս բարիս եւ ի հայցուածս պատկանաւորս զՏէր Աստուածատուր տեսուչս: Եւ զիս զմեռեալս մեղաւք՝ զԶաքարիայ եպիսկոպոս

---

մնած է քանի մը անճշդութիւն, զոր ուղղեցինք Ձեռագրին վրայէն, ըստ լուսանկարին, զոր հոգացած է Guppy գրավաճառն: Ձեռագրին մէջ կը գրուէ Թղ. 182ա—182բ էջերն:

գծող եւ ծաղկող այսմ տառիս։ Գրեցաւ սա ի թվիս Հայոց․ Ջ․ Ղ․ Գ․ (1544)․ ի Սուլի մանաստիրս[1] ի բռնակալութեան Սուլտան Սուլէմանին։ Եւ դուք հանդիպողք սմա՝ աղաչեմ զձեզ որ չասէք բանս նախատանաց այլ մանաւանդ Աստուած ողորմի։„

Աստուածատուր պատրիարքն ալ փոխադարձաբար ի նշան գոհութեան կը նուիրէ Զաքարիայի անուան ոտանաւորս[2]։

Ի յօրինացողէ է Տէր Աստուածատուր վարդապետէ։

Զատ եւ մաքուր յախտից մեղաց,
Առաքինի եւ սրբակեաց,
Քարտուղարըտ գերազանց,
Ակն իմաստից աղբիւր շնորհաց։
Րամից ըստ յայսըմ սարասի,
Ի Սանիրայ հոգւոյդ հօսի,
Ահերմոնէ մարմնոյտ աճի,
Յեռեալ ի քիմս հոմասեռի։
Ի համասփիւռ ծաղիկ նրման
Իմաստութեան տուն աւթարան,
Նարդոյս քըրքում եւ սիրական,
Պայծառ շուշան եւ պալասան։
Հեզ եւ խոնարհ հրամանատար,
Զհայցուածըս մեր յանձին կալար,
Բազում ջանիւ աշխատեցար,
Գըծագրեցեր մարգարտաշար։

---

1 Ձեռագրին մէջ գրուած էր "Սուլիման ատիրս„ գիծմամբ՝ միացնելու արգելք ըլլալուն պատճառաւ նախորդ "Գրեցաւ„ի երկայնատուտն Գը։

2 Առաջին անգամ հոս ի լոյս կը տեսնէ ոտանաւորս Կրաֆորդեան Ձեռագրէն (թղ. 183ա)։ Սկզբնատառք կը կազեն "ԶԱՔԱՐԻԱՅԻ„։ Օրինակն ունէր տող 19 "ի գիրքս„, եւ տող 20 "եղբար„։

Դու ի Տեառնէ առաքեցար
Ի գիրքս յոլով աշխատեցար.
Մի նեղանար սիրուն եղբար,
Զմեզ միշտ յիշել տայ անդադար:
Յորժամ չուես ի Սորմպալէս,
Եւ հեռանաս յանարժանէս,
Առ քեզ լիցի սա յիշատակ,
ՅԱստուածատուր վարդապետէս:

Այս Թուականէս յառաջ կամ յետոյ գացած է նաեւ Հռոմ “առ պապն Փռանկաց,, ուր գրած է “սրբագրեալ ի գրոց հնոց,, Աղեքսանդրի վարուց երկրորդ օրինակ մ'ալ “զարդարած ոսկւով եւ տնօրինականով եւ ոտանաւորով,, եւ բերած է “ի Հայս ի պարգեւս մեծ վարդապետին եւ քաջ վարդապետին իմոյ Եսայեայ:,,

Ահա մեր բոլոր գիտցածը իր մասին: Մահուան Թուականն եւ այլ պարագայք կը մնան հետեւաբար անստոյգ:

Անցնինք իր գրական գործոց:

* *
*

5. Գնունեաց եպիսկոպոսի գրաւոր աշխատութեանց վրայ խօսելու ժամանակ պէտք է ծանրանալ ամէնէն յառաջ Աղեքսանդրի վարուց խմբագրութեան վրայ: Այս մասին բաւականաչափ ճառած է արդէն Հ. Տաշեան իւր մենագրութեան մէջ[1]: Կարեւորներն կը քաղենք համառօտիւ:

---

1 Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալիսթ. վարուց Աղեքսանդրի, էջ 85–136:

Սոյն կալխթենեայ Աղեքսանդրի վարուց հին հայ թարգմանութիւնն ԺԴ—ԺԵ դարուն նոր խմբագրութեան ենթարկուած է Խաչատուր Կեչառեցւոյ ձեռօք՝ "հիւսելով գրութեան մէջ իւր քերթութիւններն եւ նման կտորներ,, (էջ 95), զորոնք ապա ճոխացուցած են Գրիգորիս Աղթամարցի եւ մանաւանդ ասոր աշակերտն Զաքարիա այլեւայլ կաֆաներով։

Զաքարիայի խմբագրութենէն երկու օրինակ ունինք. մին է Հ. Տաշեանէ Սսոյ օրինակ կոչուածն[1], զոր ընդօրինակած է Զաքարիա ի Հռոմ, ինչպէս կը ծանուցանէ կարեւոր յիշատակարանիս մէջ, զոր ի մէջ կը բերենք հոս[2]։

"Եւ արդ զայս այսպէս համեմատեալ՝ մի ստգտանիմք յոմանց, զի զպատճառն վերագոյն ճառեցաք. այլ ընթեռնլով զսա՝ յիշման արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառեցիս, ընդ նմին եւ Զաքարիա եպիսկոպոս գծողս եւ նկարողս, զի ի յարմարումն սակաւ բանիցս եւ ի գրչութիւն գրոցս հաւատով աշխատեցաք. նա զի հեթանոսական գրեալքըն անմիաբան են եւ անվայելուչ՝ ի վերոյ շաղկապ բայիւք որակացեալ, եւ ի ներքոյ լի մնոտի կարծիւք եւ խաբէութեամբ, որպէս առ Գրասիրաւն Պտղոմէոսիւ անպատուեցաւ։ Իսկ զայս Պատմութիւնս աշխարհակալին Աղէկսանդրու, զոր գրեցի իմով ձեռամբս ի մեծ քաղաքն Հռոմ առ պապն Փռանկաց, ի յաթոռ նստեալ

1 Մեր Մատենադարանի Թ. 98, որ Ս. Պետրոսեանի ձեռօք բաղդատութիւն մ'է Սսոյ օրինակին եւ Տպագրութեան. Հմմտ. Ցուցակ, էջ 367—68 եւ Ս. Կալխթ. էջ 129–132 եւ 152—55։

2 Ձեռ. Մատենադարանիս Թ. 98, Թղ. 75ա—բ. նոյնն հրտ. եւ Տաշեան՝ անդ 88–89։

*Պետրոսի եւ Պաւղոսի առաքելոցն, սրբագրեալ ի գրոց հնոցն, սակս աւգտի, եւ զարդարեցի ոսկով եւ տնաւրինականով, եւ աւտանաւորով, ի փառս Փրկչին. եւ բերեալ ի Հայս պարգեւս մեծ վարդապետին եւ քաջ վարդապետին իմոյ Եսայեայ, եւ պարոն եղբարցն իմոց եւ հարցն Պռաւշանց տոհմին. զի եւ սակս աւկտի ինձ եւ այլ համբակաց, որք կամին աւկտիլ յԱղեկսանդրէ. զի թէպէտ էր յընտիր եւ ի հին աւրինակէ, այլ անյարմար եւ շաղփաղփ. վասն որոյ գտեալ եւ բերեալ քերաւղաւրէն, արարի անսուտաւրինակ ճանապարհ. զի ի յընթեռնուլն իմասցին պըւէտիկոսքն, քարտուղարք, եւ ապայ իմասցին զիմ աշխատանս ի սմայ, զոր լիապէս վաստակեցի:„*

Այս տողերու համաձայն Զաքարիա իւր առջեւի բնագիրը՝ Խաչատրոյ եւ Գրիգոր Աղթամարցւոյ խմբագրութեամբ, “զարդարած է ոսկւով„, այս է ոսկենկարներով, զոր միշտ պարծենալով կը յիշէ եւ այլուր. այսպէս “Զաքարէ եպիսկոպոս գծողս եւ Նկարողս Աղեքսանդրի գրոց„, “ի Զաքարիայ եպիսկոպոս Նկարողէ„ եւն: Բայց հոս պէտք է գիտել, որ, ինչպէս Հ. Տաշեան կը միտի կարծել (էջ 130) ամէն Նկարազարդ օրինակք վարուց Աղեքսանդրի Զաքարիայի հետեւողութեամբ չեն. այսպէս Զաքարիայի ժամանակակից Յովասափ Սեբաստացի մի եւ նոյն ատեն (1535) օրինակած է Նկարներով եւն Կալիսթենէսի գործն[1], որ այժմ կը պահուի Բերլինի Մատենադարանը (Cod. Arm. 100):

---

[1] Ձեռ. մասին տես Տաշեան՝ անդ, 165—166:

Երկրորդ զարդարած է "տնօրինականով", այսինքն տնօրինական ոտանաւորներով կամ կափաներով, զորոնք որոշելու համար Խաչատրոյ կամ Գրիգորի հատուածներէն երբեմն "Զք", համառօտագրութիւնն կը դնէ քովը եւ երբեմն "Զաքարիա եպիսկոպոս"։ Բայց կան հատուածներ ալ որոնք թէեւ անանուն են, բայց իր գրիչը մատնանիշ կ'ընեն. Հ. Տաշեան (անդ, էջ 132) նշանակած է այսպիսի քանի մը հատուած։

Այսպիսի անանուն հատուածներն ալ պատշաճ համարեցանք ստորեւ ի շարս Զաքարիայի հատուածներու զետեղել՝ ոչինչ հակառակ ապացոյց գտնելով Տաշեանի հաստատութեան դէմ։ Մտադրութեան արժանի է հոս Հ. Տաշեանի խօսքերս. "Այսոնցմէ դուրս թէ կան ուրիշ կտորներ Զաքարիայի՝ որոշ չենք կրնար ըսել։ Ինչպէս նաեւ ոչ այն ամէն՝ որ ձեռագրաց մէջ Զաքարիայի կը տրուի՝ պէտք է որ ապահովութեամբ վերջնոյս ըլլայ. նոյնպէս նաեւ կրնան շատ մ'այն անանուն կտորներու մէջ Զաքարիայի ըլլալ, ինչպէս արդէն քանի մ'այսպիսի կտորներ յիշեցինք" (էջ 132)։ Ի հարկէ հոս խօսքն մեր Թ. 98ի վրայ կարելի չէ տարածել, քանի որ նախագաղափարն ինքնին Զաքարիայի գրչէն է։ Շատ աւելի դիւրին պիտի ըլլար այս կէտիս մէջ մէն մի հատուածներու հեղինակն ճշգրտել, եթէ ամբողջութեամբ մատչելի ըլլար մեզ երկրորդ Օրինակն Զաքարիայի ձեռքէն։

Այս Օրինակն սեպհական էր ժամանակաւ անգղիական Lord Crawford and Balcarres գերդաստանի ընտանեկան մատենադարանին, եւ կը կրէր Հայ գրչագրաց կարգին մէջ Թ. 3։ “Մագաղաթեայ, բոլորգիր, 183 թղթով,, Ձեռագիրս հանգամանքով նման է Սսոյ օրինակին՝ նկարազարդ ոսկեխառն գոյներով եւ կեչառուեան ոտանաւորներով։ Գրոցս երրորդ թերթէն 8 թուղթ եւ իններորդէն 2 թուղթ պակաս է. ունի 119 նկար եւ աւելի քան 200 ոտանաւոր. այսպէս կը նկարագրէր Ս. Վ. Պարոնեան յամի 1892 առ Հ. Տաշեան թղթին մէջ[1]։ Այժմ Կրաֆորդեան Մատենադարանն ստացած է Հայերէն գրչագիրներով հանդերձ The John Rylands գրավաճառանոցն ի Մանչեստր, որուն գրավաճառն A. Guppy խնդրանօքս ի ձեռն Պրոֆ. Կոնիբերի դրաւ տրամադրութեանս ներքեւ կարեւոր յիշատակարաններու լուսանկարը։ Ձեռագիրը ծագած է նոյնին Զաքարիա եպիսկոպոսի ձեռքէն, եւ զուր է այս մասին Կ. Բասմաջեանի կասկածն[2] թէ “այլ ձեռաց արդիւնք է, եւ հետեւաբար կրաւֆորդեան օրինակը Զաքարիայի իսկական ձեռագիրը չէ,, (Տաշեան՝ անդ, 182—3)։

Ստորեւ պիտի տանք Զաքարիայի Կաֆա-

---

1 Մանրամասնութիւնք Ձեռ. մասին տե՛ս անդ, էջ 156—60։

2 Հիմն, որուն վրայ յեցած է Բասմաջեան՝ է Ձեռագրին “Սուլթան ամիր,, ձեւն, որ, ինչպէս կանխեցինք ըսել, նպատակաւ տեղի ունեցած է, եւ ոչ անգիտութեամբ։

ներու ամփոփ հրատարակութիւնը մեր 98 ձեռագրէն հանելով։

* * *

6. Բաց ի կալիսթինեայ Աղեքսանդրի վարուց նոր խմբագրութենէն ունինք Զաքարիայէն նաեւ հարուստ թուով տաղեր։ Երկու խմբի կրնանք բաժնել զասոնք. 1. Հարազատք եւ 2. Երկբայականք։ Վասն զի մեզ ծանօթ են "Զաքարիա եպիսկոպոսի" ընծայուած 14 տաղ, որոնց սակայն մէկ տաղասացի վերաբերիլն դժուարին է հաստատել։ Ասոնք են.

## Ա. ՀԱՐԱԶԱՏՔ.

1. Տաղ ի խժըժեցւոյ Զաքարիա եպիսկոպոսէ ամենայն գնունեաց։

"Առաջին մարդոյն նմանիս...,,

2. Տաղ վարդին եւ բլբուլին ի Զաքարիա եպիսկոպոսէ գնունցւոյ։

"Ահա պայծառացաւ լոյսն արեգական...,,

3. Տաղ վարդին եւ բլբուլին ըստ անուան երգողին ի Զաքարիա եպիսկոպոսէ։

"Իսկ գարուն երբ քաղցրիկ հնչէ.,,

4. Տաղ վարդին եւ բլբուլին ի Զաքարիա եպիսկոպոսէ։

"Այսօր դառնայ արեւն ի խոյն...,,

5. Տաղ ըստ անուան երգողին ի Զաքարիա եպիսկոպոսէ. Գովասանութիւն ումեմն վարդապետի։

"Զօրք անմարմնոցն հիանալով։"

6. Ընծայական առ Աստուածատուր պատրիարք "ի գծողէ Զաքարիայէ"։

"Ի մեղսամած մատանցս ընկալ..."

Բ. ԵՐԿՐԱՑԱԿԱՆՔ.

7. Տաղ Վարագայ Խաչին ի Զաքարիայէ Վարագեցւոյ ասացեալ։

"Զվարագ ասեմ զքաղձալին..."

8. Տաղ ողորմուկ։

"Զառածեալ մեղօք եղկելի..."

9. Տաղ ի սուրբ Կոյսն Մարիամ։

"Ամենօրհնեալ սրբուհի,
դուստրը Դաւթի արքայի։"

10. Տաղ վասն Ղարիպութեան։

"Ի քէն Տէր հայցեմ, Հայր գթական։"

11. "Անեղ լոյս ընդ Հօր Որդին,
Որ կազմեաց պատկեր Նախնին։"

12. "Տունկ ես ամենայն ծաղկանց,
Ընտրեալ ի բազում ականց..."

13. “Օրհնեալ ես միշտ ի յէութեան,
Անճառ շնորհօք իմաստութեան:„

14. “Տարփամ ի լեառըն բաղձական,
Առ խորանին քում սրբութեան:„

7. Ցանկիս առաջին Թ. 1—5 տաղերն աներկբայ հարազատ կը համարինք Գնունցւոյ: Հիմ ունինք առ այս մեր Թ. 684 Ձեռագիրն, ուր առաջին 5 տաղերն իբրեւ միեւնոյն հեղինակի գործ միահետ կը յաջորդեն: Ասոր հետ կը հաշտուին նաեւ լեզուի եւ ոճի նոյնութիւնք: Թ. 2ը՝ Հայերգ, էջ 86, կ'ընծայուի “Խաչատուր եպիսկոպոսի ամենայն Գնունեաց„. մեզի անյայտ է Տէվկանցի հոս օգտուած աղբեր արժէքն. մեր օրինակն սակայն կը բառնայ ամէն տարակոյս: Վեցերորդը նոյնպէս կասկած չի վերցըներ, կրելով վրան բացայայտ հեղինակին կնիքը: Դժուարութիւնք կը բարդուին ամենայն սաստկութեամբ Թ. 7—14 տաղերու վրայ:

Թ. 7. կ'ընծայուի Զաքարիա Վարագեցւոյ, որ հաւանականաբար ԺԷ դարու համանուն առաջնորդն է Վարագայ, որ ապա Կ. Պոլսոյ պատրիարք ալ եղաւ (1628—1633)[1], եթէ Ձեռագիրք մասնաւոր դժուարութիւն չյարուցանեն առ այս: Ինձ ծանօթ երկու Ձեռագիրք ԺԷ—ԺԸ դարերէ են: Գնունեաց եպիսկոպոսն ալ սակայն Վարագէն շատ հեռու չէ ապրած, եւ կրնար,

---

1 Առ. Դաւրիժ. 241. “Եւ էր Զաքարիա վարդապետս յերկրէն Վասպուրականի„: Հ. Գ. Գալէմքեարեան՝ Սարգիս Արքեպ. Սարաֆեան, Վիեննա 1908, էջ 344–345:

ինչպէս Գնունցի, Խժլժեցի, Լմեցի, կոչուած է, նաեւ Վարագեցի անուանուիլ։

Հայերգ, էջ ԺԱ, կը յիշէ Ա. Վ. Տէվկանց իբրեւ երգիչ "Զաքարիա կաթ. Սսոյ Ջուղայեցի", որով ապահովապէս կ'ակնարկուի Ազարիա կաթ. († 1602), որուն ինձ ծանօթ երգերն "Ազարիա" կը կրեն վրանին։ Թէ թ. 8—14 տաղերու մէջ ինքն ալ ունի՞ հեղինակութիւն, որոշ բան մը չեմ կրնար ըսել։

Կայ երգիչ մ'ալ Զաքարիա Ագուլեցի որուն անունը գիտեմ միայն Տ. Վ. Պալեանի տողերէս[1]. "Զաքարիա Ագուլեցի. ԺԷ. դար։ Ասոր մասին առ այժմ կենսագրական ծանօթութիւններ կը պակսին մեզի։ Զաքարիա երգած է շատ մը տաղեր ու երգեր։ Իր երգած տաղերէն օրինակ մը անցած ըլլալով մեր ձեռքը, կը դնենք այս տեղ". Հրատարակածն է թ. 8. "Զառածեալ մեղօք եղկելի" տաղն, որ մեր երկու Ձեռագիրներու մէջ լոկ "Զաքարիա" յորջորջումն կը կրէ։ Չունենալով ըստ այսմ որոշ ապացոյց, կը հրատարակեմ իբրեւ երկբայական ստորեւ ի շարս Գնունցւոյ տաղերու։ Միւսներէն թ. 10 շատ հաւանական կը թուի ինձ ընծայել Գնունցւոյ, նկատելով որ երգիչն "ղարիպ" կ'անուանէ ինք զինք[2], բան մը, զոր Զաքարիա ար-

1 Բիւրակն, 1897. էջ 738—39։

2 Կոստանեանց այս տաղին քով կը ծանօթագրէ. "Այս տաղի մէջ արծածուած են զգացմունքներ այնպիսի խօսքերով, որ կրկնւում են "Վայրի հաւուկ մի եմ բռնած ու բերած ժողովրդական երգի մէջ" (էջ 46)։ Այս երգն

գէն ողբացած է Թ. 4ին մէջ։ Իրմէ կը համարիմ նաեւ Թ. 9 տաղն, զոր Գ. Մսերեան Ճռաքաղի մէջ հրատարակած է խորագրոյս ներքեւ. "Զաքարիայի ուրումն երգ ի Ս. կոյսն Մարիամ„։ Մեր Թ. 577 Ձեռ. մէջ անանուն է. Ս. Ղազարու Ժ. Տաղարանի մէջ (էջ 154) Ցուցակի մը համաձայն ընծայուած է "եպիսկոպոսի„ մը։

Թ. 11—12 ծանօթ են ինձ միշեալ ցուցակէն, որուն համաձայն կը գտնուին Ս. Ղազարու Մատենադարանի Ա. Տաղարանին մէջ (էջ 547, 557), նոյնպէս Թ. 13—14 նոյն Մատենադարանի "Ընդհանրական Ըտ.„ Ձեռագրին (էջ 397, 400) մէջ։ Օրինակն չունենալով՝ հրատարակել չկրցանք հոս։



8. Զաքարիա իբրեւ ժամանակակից, հայրենակից եւ զուգակից Աղթամարցի բանաստեղծ Գրիգորներու եւ բանաստեղծ խաչատուր կեչառուեցւոյ արենակից, երգած է նոյն խանդով, նոյն զգածումներով եւ նոյն պատկերներով, ինչպէս երգած են իր ժամանակակիցք։ Քնարերգու է նա, վարդի եւ բլբուլի պատկերներու առջեւ խորհրդական հայեցումներով։ Թէ այս կէտիս եւ թէ գաղափարներու բացատրութեանց մէջ շատ մեծ ազդեցութիւն կրած է Զաքարիա իւր ուսու-

ալ շատ նոր բան մը չէ. մեր Թ. 405 Տաղարանն, որ ԺԶ—ԺԷ դարէ կը թուի, կը բովանդակէ ի միջի այլոց նաեւ այս տաղը։ Համեմատելու է եւ "Հոգի մի տուր Ղարիպ„ տաղին հետ (Թ. 405, Թղ. 12ա), ուր նոյնպէս կան նման մտքեր։

ցիչ Գրիգոր Կաթողիկոս Աղթամարցւոյ բանաստեղծութիւններէ, զորոնք սիրած է, ամփոփած է ի մի, յաճախ կարդացած եւ հետեւած։ Այսպէս ‘‘Ահա պայծառացաւ լոյսն արգական,, տաղն նմանութիւն մ'է Աղթամարցւոյ ‘‘Յետ գնալոյ վարդին,, բանաստեղծութեան, մանր համեմատութիւնքն թողլով այլոց, կը մատնանշեմ հոս պարզապէս այս տունը.

| Զաքարիա. | Գրիգոր. |
|---|---|
| Տիրես ամենայն ծաղկանցըն բոլոր, | Ծաղկանցըն հաւասար գլուխըն դու ես, |
| Բազմիս ի գահոյս որպէս թագաւոր, | Որպէս զարքայ եւ տէր ամենու տիրես, |
| Արա զիս արժանի քեզ ծառայ զինուոր. | Գունովըդ վայելուչ հոտով անոյշ ես. |
| Որ ես եմ գեղեցիկ թըռչուն թեւաւոր։ | Յամէն առաւաւտու քան զարեւ փայլես։ |

Աւելի մեծ է նմանողութիւնը Զաքարիայի ‘‘Զօրք անմարմնոց հիանալով,, եւ Գրիգորի ‘‘Գովեալ սուրբ հայր ոմն յարակայ,, ցայժմ անծանօթ տաղերու մէջ. Զաքարիայինը ուրիշ բառերով շրջումն է միայն Գրիգորի տաղին. օրինակի համար այս տունը.

| Զաքարիա. | Գրիգոր. |
|---|---|
| Նուաղեալ սիրտ իմ յոյժ տոչորի, | Սուրբ եւ մաքուր հայր պատուական |
| Խանդաղակաթ առ քեզ լինի, | Ազգի պարծանք եւ աննըման |
| Սիրով կապեալ ընդ քեզ կապի, | Յոյժ փափաքիմ քո սուրբ տեսլեան. |

Ի՛ այլ ի քեզէ ոչ բաժանի։
Իւսմամբ միտք իմ ի քեզ
պարէ,
Մոլորական իմ ի տանէ,
Զաքարիայէ սա գրեալ է,
Ի Թափառնիկոմն աղքատէ։

Քո անառակ որդիս անբան։
Երգեմ ձայնիւս նուաղէ,
Մոլորական եմ ի տանէ,
Գրիգորիսէ սա գրեալ է,
Ի Թափառնիկոմն աղքատէ։

Այս ամէն հետեւողութիւններով հանդերձ Զաքարիա ունի ինքնուրոյն ոճ մը, ոչինչ նուազ ողորկ եւ գրաւիչ քան ժամանակակիցները։ Իր տաղերու մէջ եթէ թերութիւն մը զգալի է, այն կը կայանայ մասնաւորապէս մտաց բանազբօսիկ արտայայտութեանց մէջ. թերութիւն մը, որ հասարակ է ընդհանրապէս ամէն միջնադարեան բանաստեղծներու. որուն պատճառն պէտք է համարիլ տներու սկզբնատառերու եւ երբեմն վերջատառերու մէջ կապուելու մոլութիւնը։ Զաքարիայի բոլոր տաղերն գրեթէ այսպէս արուեստակեալ են. առաջին, երկրորդ, չորրորդ եւ իններորդ տաղերու տնատառերու մէջ ջանացած է դասաւորել այբուբէնը։ Երրորդի մէջ յօդել ‘‘Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ,,, տասներորդին մէջ ‘‘Ի ՂԱՐԻՊ ԶԱՔԱՐԷ,,, իսկ հինգերորդին սկզբնատառերն կը կապեն ‘‘ԶԱՔԱՐԻԱՅ ՆԸԻԱՍՏԷ,,, վերջատառերն ‘‘ՎԱՐԴԱՊԵՏԻՆ˙Է,,։

Մենք ստորեւ հրատարակել փորձելով Միջնադարեան Հայ բանաստեղծիս մտաց արտադրութիւնքն առաջին անգամ, վստահ ենք թէ գրգիռ մ՚ընծայած պիտի ըլլանք այլոց բանաստեղծիս այլ անծանօթներն ալ ի լոյս հանելու,

ըլլայ գրչագրաց յիշատակարաններ իր ձեռքէն, որոնք իր կենսագրութիւնը կրնան լուսաւորել, ըլլայ նորանոր տաղեր, որոնք իր մտաց կորովութիւնն աւելի կրնան բարձրացընել:

* * *

Գ. Յետագայ հրատարակութեան ժամանակ երկու Ձեռագիր գլխաւորաբար ունէինք աչաց առջեւ: Առաջին 5 տաղերու համար բնագիր առած ենք Մատենադարանիս Թ. 684 Ձեռագիրն: Կարեւոր Ձեռագրիս նկարագրութիւնն կու տանք հոս համառօտիւ:

*Թուղթք*՝ 83: — *Մեծութիւն*՝ 11×8 սմ.: — *Գրութիւն* միասիւն 7×5 սմ.: — *Տողք*՝ 17: — *Թերթք*՝ այժմ Ա—Ը: — *Նիւթ*՝ թուղթ հաստ եւ ողորկեալ, դեղնագոյն: — *Կազմ*՝ հին կաշեկազմ: — *Հանգամանք*՝ լաւ. եզերքներն կան այլ եւ այլ ձաբռտուքներ. պատռած ինկած են այժմ այլ եւ այլ թղթեր (Գ. թերթէն 2. Դ. թերթէն 4. Ե. թերթէն 4. Զ. թերթէն 1 եւ Ը. թերթէն 2. Թղ. 25 կիսով պատռած է: — *Գիր*՝ բոլորգիր փոքր, հաստ եւ կանոնաւոր: — *Զարդագիրք*՝ գրեթէ ամէն ոտանաւորի սկիզբը: — *Խորագիրք*՝ սեւադեղ եւ մանր բոլորգիր. տնատառք կարմրագիր: Լուսանցքն բաժնուած է ներսէն երկու նեղ եւ դրսէն երկու լայն կարմրագծերով: — *Ժամանակ*՝ ԺԶ դար, յետ 1540 տարւոյ: — *Գրիչ եւ ծաղկող*՝ ապահովապէս

Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց։ — Տեղի եւ Տէր անյայտ։ — Յիշատակագրութիւնք միայն թղ. 26բ. “Երբ զայս տաղս ասես, զանարժանս յիշես, երբ որ չի յիշես նա իսկի չասես, տես եւ թղ. 17ա, 47ա, 53ա։ — Տեղեկութիւնք՝ կողի ներսը կը գրուի. “Առաքեցաւ փոքր ձեռագիրս ի Հ. Մատթէոսէ Հաճեան. Խոտորջուր գտաւ ձեռագիրս ի Խնդաձոր, ի թաղն Քիշմիշին, ի տան Կիլանեան Քերովբէ աղայի, որ ետ ինձ զայս ի պարգեւ. 1904. Զ. 25,,։ — Ձեռագիրս Տաղարան մ'է, ուր կը բովանդակուին. Թղ. 2ա—42բ. Գր. Աղթամարցւոյ տաղերը, Թղ. 43ա—բ. Յովհ. Թլկուրանցւոյ “Ի մահ քանի զքեզ յիշեմ,, տաղի մէկ մասը։ Թղ. 44բ—46ա Խ. Կեչառուեցւոյ “Թէ մարդ ես,, տաղն յարկակիցներով։ Թղ. 47ա—61բ. Զաքարիայի 5 տաղերը. եւ 64բ—74բ Կարապետ Վարդապետի “Արարածոց տաղը,, յօրինուած 1540ին։ Թղ. 75ա—83բ օտար նորագոյն ձեռքէ նոտրագիր մաս մը օրհնութենագրէ մը։

Գրիչն համարեցանք ԺԶ դարու բանաստեղծն Զաքարիա։ Եւ այս յօժարեցուց զմեզ նախ Ձեռագրին բովանդակութիւնը, որ ինչպէս կը տեսնուի ԺԶ դարու (—1540) հեղինակաց երգերն ունի միայն։ Այսու կ'ունենանք մեզի terminus post quam 1540 թուականը։ Ժամանակ մը, որ քաջ կը պատշաճի նաեւ Զաքարիայի։ Երկրորդ հիմ ունէինք Զաքարիա համա-

րելու գրիչ ձեռագրիս՝ այն մեծ նմանութիւնն, որ կայ Կրաֆորդեան եւ այս ձեռագիրներու գրերու մէջ։ Ըստ ամենայնի մէկ գրիչ եւ մէկ նկարագիր կը մատնանշեն երկու ձեռագրաց ալ գրութիւնք. այս տարբերութեամբ միայն, որ Կրաֆորդեան Ձեռագիրն աւելի մեծ բոլորգրով գրուած է քան մեր Թ. 684ը (Կրաֆորդեան Ձեռագրին մեծութիւնն է 20·5×15·5 *cm*)։

Երկրորդ Ձեռագիր մ'ալ ունէինք աչաց առջեւ Մատենադարանիս Թ. 663 Տաղարանը, որուն նկարագրութիւնն է.

*Թուղթ*՝ այժմ 100։ — *Մեծութիւն*՝ 15×10·5 սմ.։ — *Գրութիւն*՝ միասիւն 10×6 սմ.։ — *Տող*՝ 15։ — *Թերթք*՝ այժմ ԺԲ։ — *Նիւթ*՝ թուղթ հաստ եւ ողորկեալ, դեղնագոյն։ — *Կազմ*՝ շատ հին, ինկած են այժմ կողերը։ — *Հանգամանք*՝ շատ խեղճ. քայքայուած, բաժնուած եւ ինկած են շատ թերթեր եւ թղթեր։ — *Գիր*՝ նոտր։ — *Զարդագիրք*՝ ամէն ոտանաւորի սկիզբը։ — *Խորագիրք*՝ կարմրագիր. տնատառք են կարմիր եւ մանուշակ գրերով։ — *Ժամանակ*՝ անյայտ, ԺԷ—ԺԸ դար հաւանականաբար։ — *Գրիչն* Յովհաննէս (Թղ. 86բ)։ Ստացիչն՝ Աստուածատուր (Թղ. 67բ)։ — *Տեղի*՝ անյայտ։ — *Կը բովանդակէ* գլխաւորաբար Գրիգոր Աղթամարցւոյ տաղերը։

Բացի այս երկու տաղարաններէն գործածած ենք նաեւ Մատենադարանիս Թ. 405 եւ Թ. 577

Տաղարանները։ Առաջինը յայտնի է արդէն Տաշեանի Ցուցակէն (էջ 856—57). երկրորդն ընդօրինակուած է Մկրտիչ Ոսկանեանէ յԱժդարխան յամի 1742։ — ‘‘Տաղն վասն Ղարիպութեան,, համեմատած ենք Կերլա Հայաքաղաքի Խգ. ա. տաղարանին հետ, որ օրինակուած է 1605ին Յակոբ Թոխաթեցւոյ ձեռօք ի Զամոսցա։

Կափաներու հրատարակութիւնն եղած է ըստ Թ. 98 Ձեռագրին։



## ՏԱՂՔ

# ԶԱՔԱՐԻԱ ԳՆՈՒՆԵԱՑ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# 1.

## ՏԱՂ Ի ԽԺԸԺՑԻՈՅ

### ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ԳՆՈՒՆԵԱՑ

*Առաջին մարդոյն նմանիս,*
*որ ստեղծեաց Հայրն անեղական։*
*Բանըն ծոյածին անճառ,*
*գնայ արար պատկեր տիրական։*

*Գեղեցիկ ես քան ըզնա,*
*որ չինեաց աջըն հայրական։*
*Դու չես հողեղէն զարմէ,*
*'ւ ի լուսոյն ես արփիական։*

*Երկնից բանակքն անմահից,*
*ըզպատկերըն քո հիանան։*
*Զքեզ իւղ մեծագին ասեմ,*
*որ խորհուրդ ես արքայական։*

---

**1** Բնագիրը ընդօրինակած ենք Մատենադարանի Թ. 684, թղ. 47ա–49բ ձեռագրից (= A.). Համեմատած ենք Ա. Վ. Տևկանցի հրատարակության հետ (= H. տե՛ս Հայերգ, էջ 78–81)։ Հմմտ. Հանդ. Ամս. էջ 238։

Խորագրերն A. ունի "*Այլ տաղ ի խժըժցոյ Զաքարայ եպիսկոպոսէ ամենայն Գնունեաց*„. H. "*Այլ տաղ Զաքարեայ Գնունեաց եպիսկոպոսէ*„։

4. H. *մարդոյ նմանես*։ — 6. H. *բանին*։ — 7. H. *գնայ*։ — 11. H. չէ ’ւ։ — 12. H. *բանակ անմահին*։ — 13. H. *ընդ պատկերըն*։ — 14. H. *իւղ*։

Էդեմաբուխ աղբեւր,
արարածք ի քէն զովանան:
Ընդրեալդ ի զաւրաց վերնոց,
գովելի ես որդւոց մարդկան:

Թագ զարմանալի կազմիս,
յարքայից գըլուխըս նըշան:
Ժողովին ծաղկունք լերանցդ,
եւ տեսնին զքոյ գեղտ աննըման:

Իբր ըզթագաւոր բազմիս,
հոտ առնուս դու անմահութեան:
Լոյս վառես ի գիշերի,
հալածես զխաւարս հեռական:

Խոհեմ իմաստուն զինուոր,
սարսափին զաւրքն ի քէն դողան:
Ծառ յեդեմական դրախտէն,
միշտ կանաչ եւ անթափական:

Կենաց պտուղ ի լուսոյ,
անթարշամ եւ անապական:
Հոտ անուշ ի քէն բուրէ,
փարատէ զցաւս մարդկան:

Ձայն քո տատրակի սիրուն,
ողջախոհ մրտաւք մաքրական:
Ղամբար աստղ լուսաւոր,
ելանես ի յառաւաւտեան:

Ճմլեալ խաղող ի յորթոյ,
քաղցրահամ բաժակ բերկրութեան:

---

16. H. էդեմաբուխ աղբիւր: — 18. H. զորաց. — 19. A. որդոց: — 23. H. տեսնեն... գեղդ: — 26. H առնես: — 28. AH. զինւոր: — 32. H. պտուղն: — 40. H. յորթոյն: — 41. A. քաղցրահամ:

Մաքուր մարգարիտ մարմնով,
վարսաւոր սրովբէանըման։

Յարմատոց ի տունկ փըշոց,
վարդ փթթեալ արմաւ եւ շուշան,
Նոր ծաղիկ ի գնացըս ջուրց,
հոտ բուրէ ի քիմըս մարդկան։

Շաղ առնուս յառաւաւտէ,
ով տեսնի ըզքեզ հիանան։
Ոսկի խընծոր ցանկալի,
յեռեալ ես ընդ սարդիական։

Չքնաղ վայելուչ գունով,
երփնազարդ որպէս ծիածան։
Պատկեր նըման հրեշտակի,
սոսկալի եւ յոյժ հրաշագան։

Ջուր մանրածաւալ գնացիւք,
ելանես ի յոսկի ական։
Ռահ դասուց հրեղինացն,
պահէ զքեզ զաւրքն անմարմնական։

Սոսկալի զըմուռ եւ խունկ,
դու աւծումն ես անապական։
Վայելուչ անգին հանդերձ,
եւ ըզգեստ թագաւորական։

Տաղիւք երգս դրուատեցից,
զքեզ գովեմ քաղցրիկ ձայնական։
Բոտեալ ծարաւիմ հոգւով,
նըւաղիմ առ քոյդ տեսութեան։

---

43. A. սրովբէայնման։ — 45. A. վարթ։ H. չէ+ եւ։ — 49. H. տեսնէ։ — 50. H. խնձոր։ — 53. A. երբնազարդ։ — 56. A. մանրայծաւալ։ H. մաքուր ծաւալ։ — 58. H. դասուցն հրեղինաց։ — 59. H. պահ։ — 64. A. դրւատեցից։ H. դրուատից։ — 65. H. գովեն։ — 66. A. հոգով։

Ցաւալք եմ վիրաւորեալ,
սպառեմ ես առողջութեան։
Իւսեա զիս ի քեզ սիրով,
բըժըշկեա յախտէս զաղրական։

Փութամ հետեւիլ վարուցդ,
որ ամբիծ ես անապական։
Քոյ արարողին երգեմք
զաւրհնութիւնս միշտ եւ յաւիտեան։

---

Ծ.

## ՏԱՂ ՎԱՐԴԻՆ ԵՒ ԲԼԲՈՒԼԻՆ

### Ի ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ԳՆՈՒՆՑՒՈՅ

Քանզի բլբուլն ասէ:

Ահա պայծառացաւ լոյսն արեգականն,
Այսաւր ելեալ ծագեաց յաշխարհս ամենայն,
Թռչունքըն մեզ բերեալ աւետիս գարնան,
Քաղցրիկ եղանակեն ըզերգս աւրհնութեան։

Բըղխէ երկիր ըզբոյսս, ծաղկաւք զարդարի,
Ոստունք եւ ճիւղք ծառոցն ամէն փըթըթի.

---

70. AH. ւիւսեայ։ — 71. A. բըժըշկեայ։ — 72. H. հետեւել։

---

Ծ. Բնագիր առնուած է Թ. 684. Թղ. 49բ—57ա (= A.). համեմատուած է Տեվկանցի հրատարակութեան հետ (= H. տես Հայերգ, էջ 86—91)։ Հմմտ. Հանդ. Ամս. 279 · 281։

Խորագիրն A. ունի «...ի Զաքարա եպիսկոպոսէ Գնունցո»։ H. «...ի Խաչատուր եպիսկոպոսէ Ամենայն Գնունեաց»։

3. H. չունի այս տողը։ — 4. H. լոյս։ — 5. H. էլ ծագեաց յաշխարհ։ — 8. A. ըզբուսս։ H. բամ երկիրս բուսօք...։ — 9. A. ճուղք։

Ծաղկին այգի այգի, տան ծափըս ծափի.
Եւ զհոտն անուշ բուրեն ի քիմս ամենի:

Գայ բըլպուլն իջանէ ի մէջ բաղչենին,
Խընդրէր եւ որոնէր ըզիւր սիրելին.
Ետես որ էր ի քուն ի մէջ կոկոնին,
Սիրով քաղցրր խաւսէր զբանս ողորմագին:

Դու վարդ ես անթառամ ի դրախտն Ադենի
Մեծ թագաւոր եւ տէր ծաղկանցն ամենի.
Ի քո գունէտ ծաղկունքն ամէն զարդարի,
Եւ պայծառ գեղեցիկ փայլեն ի յերկրի:

Ես կու այրիմ ի քէն երբ լինիմ հեռի,
Եւ զաւրն ի քուն շըջիմ ողորմ ու լալի,
Ջար եւ փիղան կանչեմ թռչնոցն ամենի,
Որ թէ չաքար տան ինձ, նայ սապր ու լեղի:

Զարթիր, ով սիրելի, ի յառաւաւտին
Որ ես դու սարսափելի ահեղ տեսողին.
Շարժէ քաղցրիկ հողմով ըզթերթերթը քոյին,
Եւ զիս արժանացո տեսութեան նորին:

Էկեալ զումրին սաէ թռչնոց բըլբուլին,
Սիրով արեկ մտնունք մէջ կանաչ բաղչին.

---

10. H. ծաղիկք: — 11. H. ամէնի: — 12. H. գայր բլբուլն իջանէր ի մէջ բաղչէնին: — 13. A. ըզուր: — 14. H. ետես որ ի ներքոյ էին կոկոնին: — 15. H. քաղցրախօսէր: ողոգին:

17. H. ծաղկանց ամէնի: — 18. H. գունէգ: զարդարին: — 13. H. փայլին:

20. H. յերբ: — 22. H. ջան ու... ամէնի: — 23. H. նա:

25. H. ո՞ւր ես: — 26. H. ըզթերթերթգ: — 27. H. չունի զիս: A. արժանացոյ:

28. A. տողէ սկսեալ մինչեւ տող 68 չունի, երկու թերթն ինկած ըլլալով (թղ. 50բ է եւ 51ա է մէջտեղ): Թերթերն լրացուցած ենք Տեփլիսեան օրինակէն: — H. եկեալ:

Որ գան լերանց ծաղկունք մէջ վըրան գարնեն,
Ուրախանան ընդ մեզ ի տեսըն վարդին:

Ըզտիւ եւ ըզգիշերն եմ ես անդադար,
Զիմ սէրս ծանուցանեմ նորա հաւասար.
Որ գայ վարդըն սիրով առնէ ինձ ղըար,
Թէ չէ գընամ լինիմ ի յիմէն բէզար:

Թռչունք հաւասար ինձ երանի տան,
Թէ վարդն է գեղեցիկ եւ յոյժ պատուական.
Որ սիրով զարդարէ զծաղկունքն ամենայն,
Զչաղն ի նմանէ առնուն եւ պայծառանան:

Ժողովեցան ծաղկունքն եւ սիրով եկին,
Տեսին զշահ բլբուլն ի մէջ տերեւին.
Ամենքըն խոնարհեալ երկիր պագեցին,
Եւ զվարդն ընդ բլբուլին ձայնիւ գովեցին:

Իսկ բլբուլն ընդ ղումրին քաղցր եղանակէր,
Տեսեալ զվարդն ուրախ եւ սիրտն ծափէր.
Գունովըն գեղեցիկ հոտովն անուշ էր,
Որ զամենայն ծաղկունք ինքն զարդարէր:

Լսեմ ես զքոյ ձայնդ յերեկոյին,
Չառնեմ դուր եւ դադար ի մէջ գիշերին,
Ի քոյ բազում սիրոյն ես կու թառամիմ,
Զչաղն ես չառնում նա ես թօթափիմ:

Խաղաղ ամպն ի վերուստ քաղցր ցօղէ քեզ,
Եւ միշտ կանանչ պահէ անարատ ըզքեզ.
Դու գեղեցիկ լուսով հէնց աննըման ես,
Որ յամէն առաւօտու քան զարեւ ծագես:

Ծաղիկ անթառամ ծնեալ ծովային,
Վառեալ ի գիշերի եւ բոլորջածին.

---

32. H. Զտիւ:

Դու մաքուր պատկերով ես նըման լուսնին
Որ լինի բոլորեալ ի տասնուհընգին։

Կարմիր է քո շըրթունքդ եւ միշտ ի վառ
Եւ ամենայն լեզու ճառել չըկարէ.
Սլափդ մուշկ ու ամբար անուշահոտ է,
Եւ լեզուդ ի բերանդ Մըսրի շաքար է։

Հոտով ես դու անճառ պատկերդ է ի վառ,
Գունով ես գեղեցիկ եւ լուսանկար.
Սիրով համբուրեցից իմ սրտով յօժար,
Եւ ծըրարեմ զքեզ յիմ հոգիս հաւսար։

Ձայնիւրս պաղատիմ առ սրբութիւնդ հեզ,
Սիրով քաղցր խաւսիր, տո՛ւր պատասխան մեզ,
Որ զիմ աղաչանս դու անտես չառնես,
Եւ դառնացեալ ոգւով ի քէն չի մերժես։

Ղաւղելով ըղձքունն ի յաչացս հանի,
Եւ ծարաւեալ անձինս զարտասուս արբի.
Ի քոյ բազում սիրոյտ զմարմինս մաշեցի,
Լըցո՛ զկարաւտեալս ի քում սեղանի։

*վարդն խաւսի ընդ ըլբուլին եւ մխիթարէ զնա*
*պատասխանի տալով այսպէս:*

Ճարտար եւ իմաստուն քաջ արքայ լուէ,
Դու ես ինձ սիրելի ի բոլոր սրտէ,

---

62. H. անուշահոտէ։

68—71. H. ունի.

«Ձայնիւրս պաղատիմ առ սրբութիւնդ
Հեզ սիրով ու քաղցրախօսիր դու.
Տուր պատասխան մեզ չառնես անտես.
Եւ դառնացեալ ոգով ի քէն չմերժես»։

71. A. ոգով։ — 73. H. արտասուեցի։ — 74: H. ունի քոյ։ A. սիրուտ. H. սիրոյդ։ — 75. A. լըցոյ.

76. H. խօսեցաւ ընդ բլպուլին եւ մխիթարեաց զնա այսպէս։

Ի քոյ անչափ սիրոյտ իմ սիրտս ի վառ է
Էն արարիչն Աստուած որ ծածկագէտն է։

Մաքուր եւ պատկերով գեղեցիկ Թռչուն,
Դու ես լեզուով լատիֆ եւ մրտաւք արթուն,
Սիրուն քաղցրաբարբառ ի մէջ հաւերուն,
Եւ հանապազ նոցա ես ուրախութիւն։

Յառաջագոյն դու գաս եւ զիս հարցանես,
Շրջիս ի մէջ բաղչին եւ զիս որոնես,
Սիրով եւ քաղցրութեամբ զիս պարթուցանես,
Եւ ծաղկանցն ամէնայնի պարծանք ցուցանես։

Նստիր դու ի կառս իմ եւ բըլպուլ երգէ
Թող քոյ շիրին լեզուտ իսկի չըլաէ,
Նուրբ եւ բարակ ձայնով դու ըզիս գովէ,
Որպէս որ սրբութեանըտ քոյ վայելէ։

Շընորհքն աստուածային ի քեզ իջանէ,
Եւ աղբեւրս գետաւրէն ի քէնէ բըղխէ,
Զպապաքեալ ծարաւի սիրտս արբուցանէ,
Եւ տերեւապատ քողով ըզիս զարդարէ։

Որով եւ փափաքիմ ըզքոյ գալդ առ իս,
Վահեմ թէ հեռանաս զինչ լինիմ գերիս.

---

80. A. սիրուտ. H. սիրոյդ։ — 81. A. ծածկայգէտն. H. որ ծածկագէտ է։

82. H. մաքուր պատկերով. եւ...։ — 83. A. լեզւով։ 84. H. սիրով։ A. քաղցրայբարբառ։

87. H. շրջես։ — 89. H. բարձանց։

90. H. բլբուլն։ — 91. H. լեզուէդ... չի լաէ։ — 93. H. սրբութեանդ իսկ վայել է։ A. վաելէ։

95. H. ի քեզնէ։ — 97. H. զտերեւապատ։

98. H. ն—նի եւ։ փափագիմ։ գալդ իմ առ իս։ — 99. H. հեռանամ։

Եթէ յանկարծ ի մէջ Թիֆլիս երեւիս,
Նա բերկրեալ զուարճանայ իմ սիրտս եւ հոգիս:

Զրկայ քեզ աւրինակ յամէն կենդանի,
Տեսլեամբդ գեղեցիկ եւ զարմանալի,
Յերբ որ ծով աչերդ քոյ կու թարթի,
Իսկ դողայ ամենայն յաւդուածս եւ սարսի:

Պարզ եւ մաքուր յրստակ գերթ հայելի ես,
Ուր զիմ գեղեցկութիւնս միշտ տեսանեմ ես.
Եւ քան զամէն ակունքըն պատուական ես,
Որպէս մեղու խորիսխ քաղցր եւ անուշ ես:

Զրբեղէն կամարն ես դու երկնային,
Եւ լուսեղէն կամարն հաստատեալ ի նմին.
Ժողովէ ամպըս թեթեւ, ուր անձրեւս անդին,
Եւ շինէ զմարգարիտն ի մէջ սադափին:

Բանկս որպէս բդլալ սպիտակ ու կարմիր,
Եւ կատարեալ սիրով ի ներս մերձեցիր.
Եթէ խելք ու գաֆար ունիս նայ գիտցիր,
Որ զիմ ծածուկ խորհուրդս զամէն յայտնեցիր:

Գոհացաւ բլբուլն ընդ պատասխանիս նորա. բացեալ զբերան իւր սորինեաց ձայն եւ ասէ:

Սիրով պատասխանեց բլբուլըն վարդին
Աւրհնեմ ես անդադար զՏէրըն վերին,

100. A. յանգարծ: H. Թիփլիս: — 101. չունի եւ: — 104. A. յերփ: H. աչերդ: — 105. A. յաւդուածս:
107. H. յոր. H. որ: — 110. H. Հրեղէն կամար: — 111. H. կամար: — 111. H. Ժողովիս յամպս: — 112. H. շինես մարգարիտն:
116. H. խելք ու ջաֆար ունիս նա: A. գիցիր: — 117. H. որ իմ... խորհուրդ:
118—119. H. գոհացաւ ընդ պատասխանիս նորա բացեալ զբերան: — 120. H. պատասխանեաց... ընդ վարդին:

Որ լեցեր է զպատկերտ քոյ լուսով ի լին,
Եւ զարմանք է ցուցեր ամէն հողածնին։

Վարդ ես դու վայելուչ կանաչ տերեւով,
Եւ լի իմաստութեամբ ես որպէս բղձով,
Դու բաղում խաւսեցար քաղցրութեամբ սիրով,
Եւ գովասանութեամբ առ իս Նամակով։

Տիրես ամենայն ծաղկանցըն բոլոր,
Բաղմիս ի գահոյս որպէս թագաւոր,
Արա զիս արժանի քեզ ծառայ զինուոր
Որ ես եմ գեղեցիկ թռչուն թեւաւոր։

Բամք թռչունք երկնիցըն քեզ հասրաթ է,
Սիրով ինձ տացին թէ զվարդըն գովէ,
Եթէ մէկ պահ լռես, նայ քեզ գունահ է,
Որ հանապազ յառջեւդ քան զջահ ի վառ է։

Ցայտէ լոյսըն թափանց ի քոյին թերթէ,
Որպէս բղձառագայթս ի յարեգակնէ,
Եւ ըզնըշոյլ քոյ շողիտ ի սիրտս իմ ծագէ,
Եւ կատարեալ սիրով ի քեզ հաստատէ։

Իւղ ես մեծագին որպէս պալասան,
Եւ խորհուրդ արքային, ո՛վ վարդ պատուական,
Դու ես Նոր առաւաւտ եւ գուշակ գարնան,
Եւ խնդութիւն բերես ամենայն մարդկան։

---

122. H. զպատկերդ. — 123. H. ցուցեր։ — 124. H. կանանչ։ — 125. H. [illegible] ես։ — 127. H. գովասանութիւն առնես։ — 128. H. Տէր ես։ — 129. H. բազմես։ — 130. A. արայ. զինուոր։ — 131. H. որ ես դու....։ — 133. A. զվարթն։ — 184. H. նա։ — 135. H. առջեւդ։ — 138. H. եւ ի նշոյլ։ — 139. H. շողիդ ի սիրտ իմ։ — 140. H. իւղ ես։ — 141. A. վարթ պատուական։

Փարեմ ես հանապազ ըզվարդըն սիրով,
Եւ զարարիչն երկնից փառաւորելով,
Որ պահէ ըզվարդն անթառամ գունով,
Եւ զարդարէ զնա կանաչ տերեւով:

Քոյ Թագաւորին փառք անլըռելի,
Որ ի մարդկանէ անտես ի յերկինս նըստի,
Ինքն յամենայն լեզուէ աւրհնեալ եղիցի,
Եւ ի հրեղէն զաւրացն միշտ երկըրպագի:

Ատէ զայս աշխարհըս խեւ Գընունցի,
Որ կու թափէ զմարդիկ քան պտերեւ ծառի,
Դարձիր ի մեղաց ու գործէ բարի,
Որ չի կըրես ամաւթ ի կալն Ուռնայի:

---

## 3.

## ՏԱՂ ՎԱՐԴԻՆ ԵՒ ԲԼԲՈՒԼԻՆ

### ԸՍՏ ԱՆՈՒԱՆ ԵՐԳՈՂԻՆ Ի ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ

Իսկ գարուն երբ քաղցրիկ հընչէ,
Նայ հաւ բըլպուլն եղանակէ,
Եկեալ յայգին զվարդըն խընդրէ,
'Ի ի մէջ բաղչին զնայ որոնէ:

---

144. H. փարիմ: A. զվարթն: H. հանապազ սիրով: — 146. A. զվարթն: — 147. H. կանանչ: — 148. H. է անլըռելի: — 150. A. լեզուէ: — 151. H. եւ հրեղէն զօրաց:

152. H. Գնունեցի: — 154. H. եւ:

---

**3.** Բնագիրը առնուած է մի միակ ձեռագիր օրինակէն Մատենադարանին. Թ. 684, Թղ. 55ա—57ա: Հմմտ. Հանդ. Ամս. 281—82:

Ձեռագրին մէջ խորագիր ունի. "Դարձեալ տաղ վարդին եւ բլբլին. ըստ անուան երգողին ի Զաքարեայ եպիսկոպոսէ":

6, 13, 24, 28, 52 վարթ:

Ջուրն անդադար ի շուռ կու գայ,
Շըրջի լերունքդ 'ւ յամէն սահրայ,
Տեսնի ղծաղկունքն 'ւ ուրախանայ,
Եւ սիրով հարցանէ նոցա։

Այլ հաւ ղումրին եկեալ առ նայ,
Ասէ բըլբուլ վարդըն կու գայ.
Գընայ կանչէ բաղչին վերայ,
Մինչ որ ղկանաչ փարդէն բանայ։

Ահայ գիշերն ինձ քուն չըգայ,
Փըղան կանչեմ վարդին վերայ,
Վահեմ ձայնես իմ հեռանայ,
Աղաղակեմ երբ լուսանայ։

Քաֆուր վարդն որ ղայն լըսեց,
Նայ ըղկանաչ փարդէն պատառեց,
Ելաւ կարմիր վըրան փըռեց,
Ու ղշահ բըլբուլն ի ներս կոչեց։

Քաղցրիկ հողմըն շարժէ ըղթերթ քոյ,
Զիս արբուցէ յանուշ հոտոյ,
Զըհանդարտիմ ի քոյ սիրոյ,
Բեր համբուրեմ ըղտիպըն քոյ։

Ասէ վարդըն ի բըլբուլն ուրախ,
Դու արեկ յիմ վըրանս անախ.
Ինձ սիրով ծառայեա մէկ պահ,
Զիս կու քաղեն տանին անշահ։

Արթուն կենամ ես վասըն քոյ,
Երգեմ ձայնիւ զերգըս սիրոյ.
Մերձ լինիմ քեզ համբուրելոյ,
Նայ դուրանայ ցաւըս մարմընոյ։

---

14. վերա։ — 30. ծառայեայ։

Բոտեալ սիրով քոյ կու այրիմ,
Զի զքեզ տանին քաղուի շունչ իմ,
Վահեմ թ՚յանկարծակի մեռանիմ,
Կարաւտով ի քէն բաժանիմ:

Ի բաց թողում ըզքեզ գընամ,
Լոյսս քաղուի զինչ հեռանամ,
Դառնութեամբ կենաւք ի շուռ գամ,
Եւ ի դէմ քոյ նըստեալ ողբամ:

Ի յիմ բաղչիցըս մի գընար,
Ով քաղցրաձայն մըրղիսահար,
Երբ կու գընաս զիս ի հետ տար,
Իմ կարմիր վըրանիս համար:

Աղուոր ու թառ է գեղըն քոյ,
Երթամ դիտեմ ըզպահըն քոյ.
Ի տարին մէկ ամիրն քոյ,
Գամ իջանեմ ի բաղչէն քոյ:

Յորժամ որ վարդըն զայն լըսեց,
Ուրախացաւ զբըլպուլըն աւրհնեց.
Ըզնայ ի Տէր Աստուած յանձնեց,
Ողբով ի յիւրմէն բաժանեց:

Էլեալ բըլպուլըն արտասուալի,
Վարդին ասաց կաց կենդանի,
Մինչ որ բաղչէտ քոյ կանաչի,
Փութով դառնամ, ով սիրելի:

---

37. 40. քաղւի: — 38. յանգարծակի:
45. քաղցրայձայն: — 46. գընայս: — 55. ի յուրմէն: — 56. արտասուալի:

## 4.

# ՏԱՂ ՎԱՐԴԻՆ ԵՒ ԲԼԲՈՒԼԻՆ

## Ի ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ

Այսաւր գարնայ արեւն ի խոյն,
Եւ մեզ բերէ պայծառ գարուն:
Բուսնին ծաղկունքըն գոյնըզգոյն,
Զմեզ արբուցեն յանուշ հոտոյն:

Գան եւ թռչունքըն պար առնուն,
Քաղցր եղանակըն հաւերուն:
Դիլպար բըլպուլն հետ ծաղկընուն,
Շատըլըխ կենէ ի վրայ վարդուն:

Եհարց բըլպուլն ի նոցանէ,
Թէ ըղչիմ վարդն ով կու գիտէ.
Զի սէր նորա զիս կու այրէ,
'Ի աչս ի լալոյ ոչ դադարէ:

Էլեալ ծաղկունքըն գընացին,
Սալամ դուղայ տարան վարդին.
Ըզբըլպուլի սէրն երգեցին,
Զայնիւ քաղցրիկ ողորմագին:

---

**4.** Բնագիր առնուած է Մատենադարանի թ. 684, թղ. 57ա—59բ ձեռագրէն (= A.). համեմատուած է թ. 663, թղ. 16ա—18բ ձեռագրին հետ (= B.): Հմմտ. Հանդ. Ամս. 282 - 83:

Խորագիրն A. ունի «...ի Զաքարայ եպիսկոպոսէ»: B. «Տաղ Զաքարեայ եպիսկոպոսին Լըմեցոյ ասացեալ անուշ»:

5. B. բուսանին ծաղկունք: A. ...ըսգուն: — 6. B. Սէլամ տուվա տանին վարդուն: A. հոտուն:

9. B. գիլպէր պիւլպիւլ: — 10. B. կանէ:

11. B. պիւլպիւլն: — 12. B. թէ ըղչիմ: A. վարթն:

16. B. սէլամ տուղա: — 17. B. ըզպիւլպիւլի:

Թէ բլբուլի սէրն հետ ինձ է,
Թող սակաւիկ մի համբերէ.
Ժուկս ելանելն իսկ պատեհ չէ,
'Ի իմ բաղչէս հաւասար փուշ է։

Իսկ այն ունիմ նորա գալու,
Որ գայ ի յիմ բաղչէն իջնու,
Լռէ ըզձայնն իւր ի լալոյ,
Քաղցրիկ երգէ գերգըս սիրու։

Խաղաղ չառնում ի գիշերին,
'Ի երթամ բերեմ ըզհաւ ղումրին.
Ճափս հարկանեմ ի դէմ վարդին,
Սըրտաւքս յաւժար եւ լալագին։

Կանաչ բաղչէն քոյ վայելուչ,
Ջիս մի խոցեր դու առանց սուչ.
Հաւ ղումրին երեկ ի դրուց,
Ցէ՞ր կու մերժես զիս յայլ հաւուց։

Ձայն քոյ եղեւ ինձ լըսելի,
Այլ մի գընար յինէ հեռի.
Ղամբար վառեա ի գիշերի,
Ելեալ նըստիմ քոյ առաջի։

Ճուղըտ նըստիմ յերերմանի,
Քունս է հատեր ի գիշերի.
Մարմինս առ քեզ յոյժ ծարաւի,
Վասըն տեսլեան քոյ ցանկալի։

---

19. B. պիւլպիւլի։ — 22. B. պաղչէս։ — 23. B. գալուն։ — 24. B. պաղչէս։
25. B. լռէ զձայն իւր ի յալու։
27. B. ի գիշերի։ — 30. B. սըրտովս։
31. B. կանանչ պաղչէդ։ — 33. B. եկաւ։
37. A. վառեայ։ — 38. B. քո։
39. B. ճուղըդ։ — 42. B. քո։

Յառաւաւտունն, երբ կու բացուի,
Գոյնն է պայծառ եւ գովելի.
Նոր ձայն ածեմ քեզ սիրելի,
Սիրտ իմ սիրով քոյ ոչ յագի:

Շուռ արեկ ի բաղչէս կանաչ,
Ցիս մերձեցիր դու անամաչ.
Ուշիմ խոհեմ իմաստուն քաջ,
Առ իս մաւտեց, նըստիր ի յաջ:

Զըքնաղ գունով ես միշտ ի վառ,
Դու աՀաւոր ես ու անճառ.
Պատկերըն քոյ լուսանըկար,
Գըլուխ ծաղկանցն ես Հաւասար:

Ջուապ կու տայ ինքըն յամէն դամ,
Յառաւաւտուն զփարդէս բանամ.
ՈաՀ սիրով ընդ քեզ կու գամ,
'Ի այլ ի քեզնէ ոչ Հեռանամ:

Սարսեմ եւ ես ի քէն դողամ,
Երբ որ շարժիս նայ Հիանամ.
Վերայ վարդիտ ուրախանամ,
Առնում ի դրախտըն վերանամ:

Տուր ըզձայն քոյ ի գիշերիս,
Որ ծըրարեմ զքեզ ի յոգիս.

---

43. B. յառաւաւտուն: A. բացւի: — 44. A. գունն. B. գոյնդ: — 46. B. սիրտս... քո: — 47. B. շուրջ արեկ ի պաղչէս կանանչ: — 49. B. 'ւ իմաստուն: — 50. B. նըստիմ: A. ի յաչ:

52. B. ու պայծառ: — 53. B. քո: A. լուսայնկար:

55. B. կու տա... ժամ: — 56. B. զկանանջ փէրտէն յետ կու բանամ: — 57. B. Հետ: — 60. B. նա: — 63. B. քո:

Բախացիր ի մէջ բաղչիս,
Եւ սրբութեամբ համբուրէ զիս:

Ցաւ բրլպուլին փարատեցաւ,
Յորժամ զքաֆուր վարդըն տեսաւ.
Իրեւմամբ սիրով ծիծաղեցաւ,
Այլ տրտմութեան հոգ չի տարաւ:

Փութով ի սէր քոյ ես եկի,
Զվարդն իմ պայծառ գունով տեսի.
Քոյ արարողն աւրհնաբանի,
Ցերկրէ յերկինս անլըռելի:

Զաքարիա յիմար գերի,
Սէրըն փուշ է գառն ու լեղի.
Դու աստ արա թագբիր քեզի,
Որ անդ չըլնիս խեղճ ու լալի:

5.

## ՏԱՂ ԸՍՏ ԱՆՈՒԱՆ ԵՐԳՈՂԻՆ

### Ի ԶԱՔԱՐԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ ԳՈՎԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՈՒՄԵՄՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Զաւրք անմարմնոցն հիանալով,
Ընդ բարի վարս քո ծըգնելով,

65. B. պախչիս: — 66. B. համբուրեա՛: — 67. B. պիւլպիւլին: 68. B. երբոր: A. վարթըն: — 72. A. զվարթն: B. գունով պայծառ տեսի: — 73. B. արարաւղն: — 75. AB. Զաքարիայ: — 67 A. արայ: B. թապտիր:

**5.** Բնագիրը առնուած է Թ. 684, Թղ. 60ա—61բ մի միակ ծանօթ Օրբէլեան Մատենադարանին: Հմմտ. Հանդ. Ամս. 283—3:

Խորագիրն էր յՕրբէլեանին. "Այլ տաղ ըստ անուան... ի Զաքարիայ...:

Եւ պարակից քեզ լինելով,
Եղանակէն գերգս ցնծալոՎ։

Արքայական եղեր ծառայ
Ամբիծ վարուք իբր զԵղիա,
Զսառնացեալս ի սէր քոյ վառեա
Եւ զհոգու ցաւս ապաքինեԱ։

Քարոզաւղ բանին եղեր,
Ըզմոլորեալ հաւատս դարձուցեր,
Ըզգըլորեալսըն կանգնեցեր,
Եւ ըզվիրաւորս բըժըշկեցեՐ։

Արքայութեան ես ժառանգորդ,
Մուծեա ըզմեզ եւ լեր կցորդ,
Դու աղբեւր գետաւրէն եւ յորդ,
Արբուցանող տէր հոգեւորԴ։

Բամեալ սիրով սիրտ իմ ցընծայ,
Հեռաստանէ առ քեզ խայտեայ,
Եւ ողջունեալ քեզ համբոյր տայ,
Սիրով ի սէր քո կապեցԱ։

Ի Նըւաստէ բանըս շաղկապ,
Ընդ քեզ սիրով եղէ ի կապ,
Տիւ եւ գիշեր եմ ես ի տապ,
Սիրտս յաւժարի տեսլեանդ անխաՊ։

Ահայ արեւ մեզ ծագեալ է,
Զսէրն Աստուծոյ ի մեզ վառէ,
Զխաւար մըտացս իմ Թաւթափէ,
Մէջ գիշերի, յառաւաւտԷ։

---

9. Եղիայ։ — 10. վառեայ։ — 17. մուծեայ։ — 22. տա։

Ցեղեմական դրախտին տընկոյտ,
Անապական ծաղիկ ծառոյտ,
Պայծառ գունով փըթթեալ ի յոստ,
Հոտ քոյ բուրէ անուշահոտ:

Նուաղեալ սիրտ իմ յոյժ տոչորի,
Խանդաղակաթ առ քեզ լինի,
Սիրով կապեալ ընդ քեզ կապի,
'Ի այլ ի քեզնէ ոչ բաժանի:

Ընտրեալդ ի յանճառ Էին
Ըզքեզ եսուր ի դարիս վերջին,
Ինըն հարեւր հայ թըւականին,
Ութսուն եւ եւթն այլ ընդ նորին:

Խնամամբ միտք իմ ի քեզ պարէ,
Մոլորական եմ ի տանէ,
Զաքարիայէ սայ գըրեալ է,
Ի թափառնիկ ոմն աղքատէ:

Անկեալս յերկիր կողկողագին,
Սըրտաւքս յաւժար եւ լալագին.
Տաճար լուսոյ մայր Բանին,
Լեր մեզ բարեխաւս կըրկին:

Էին անեղին տաճար,
Ծընար զարեգակըն անճառ.
Աստուածածին Տիրամայր
Բարեխաւսեա անդադար:

---

35. անուշայհոտ:

42. Թըվականին: — 43. Զ. եւ Է.: Հայոց ՋՁԷ կը համապատասխանէ Քրիստոսի 1538 թուին: — 54. Տիրայ-մայր: — 55. բարեխաւսեայ:

## 6.

## Ի ԳԾՈՂԷ ԶԱՔԱՐԻԱՅԷ

Ի մեղսամած մատանցս ընկալ,
Տէր բարունիդ իմ պանծացեալ,
Հայցուածրդ քո եղեւ լըցեալ,
Մեղապարտէս սա գրծագրեալ։
Ոսկով երանգ գունով ծաղկեալ,
Ճըշգրտագեղ զանազանեալ,
Զայս Աղեկսանդրըս հրաշափառ,
Մի հանապազ ի ձեռըն տալ։
Սիրով պահեա զսա խնամաբար,
Ի վայելումն անձինդ մընալ,
Որ չաղտոտեն զանգին գաւհար,
Աստուածամաւր սիրուն համար։
Քանզի մեղաւք եմ աղտեղեալ,
'Ի ես քո յաղաւթքն եմ յուսացեալ,
Ջընջել զանցանս իմ տեառնաբար,
Որ է անթիւ եւ անհամար։
Եթէ աւգտիս բան ի սմանէ,
Եւ զմիտքս քո հաճեցուսցէ,
Նա զմեղաւոր ծառայս յիշէ,
Եւ թողութիւն մեղացս հայցէ։
Նա որ ծընաւ մարդ ի Կուսէ,
Լուաց ըզմեղս ի սկըզբանէ,
Նա ըզյանցանս քո ոչ յիշէ,
Եւ ընդ սրբոցն ըզքեզ դասէ։
Տէր Աստուածատուր իմ շնորհալի
Զքեզ աղաչեմ յոյժ փարելի,
Որ վայելող ես այս տառի,
Յիշեա եւ զիս զու ի բարի։
Զաքարիայ գրծագրողի,
Եւ անվարժող նրկարողի,

6. Բնագիր [illegible] Օրինակ[illegible] թ. 3, թղ. 182բ—183ա. Հմմտ. Հանդ. Ամս. 284։

Մի մեղադրէք դասք արհեստի,
Զի կար մեր այս էր որ ցուցի։
Եւ իմ վարպետըն սրխրալի,
Եւ Տէր Յովսեփն Աղթամարցի,
Ի յայսմ ամի վերափոխի,
'Ի ինձ սուգ եղեւ անբուժելի։
Դուք ասացէք սրտով ի լի,
Ինձ եւ նորա Տէրն ողորմի,
Որ քաղցրուսոյց էր եւ բարի,
Եւ անձանձիր յարհեստ բանի։

---

## 7.

## ՏԱՂ ՎԱՐԱԳԱՅ ԽԱՉԻՆ

### Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ ՎԱՐԱԳԵՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ

Զվարագ ասեմ ըզբաղձալին,
Ըզհրեշտակաց փափագելին,
Ուր խաչափայտն էր Քրիստոսին,
Զոր էր բերեալ կոյս Հռիփսիմին։

Զվարագ ասեմ զգերգովելին,
Զերկոտասան լուսոյ տեղին,
Զաւրաւքն իջեալ Տէրն ի սրմին,
Զոր ակներեւ աշխարհս տեսին։

---

**7.** Բնագիր ընդօրինակուած է Մատենադարանի Թ. 663, թղ. 19ա—20բ ձեռագրէն (= A). համեմատուած է Թ. 577, թղ. 120բ—121բ ձեռագրէն (= B) եւ Արծուի Վասպուրականի Թերթէ ԺԲ հրատարակուած (1859, էջ 128—131) օրինակին (= C) հետ։ Հմմտ. Հանդ. Ամս. 284—85։

Խորագիրն A. ունի "Տաղ Վարագա... Վարագեցոյ ասացեալ։" B. պարզապէս "Տաղ ի վերայ Վարագայ խաչին։"

3. B. Վարաք... ըզբաղձալին։ C. զՎարագն։ — 4. B. փափաքելին։ — 5. B. է։ 7. B. զՎարաք։ C. զՎարագն... ըզգովելին։ — 9. B զօրօք... ի նըմին։ C. զաւրըքն։ — 10. C. աշխարհ։

Վարագ նըման երկնից դասին,
Եւ աթոռոյ Տեառն Յիսուսին,
Այսաւր իջեալ փառաւք ի նմին
Խաչեալն Աստուած Տէր կենդանին։

Վարագ նըման էր վակասին,
Զոր ըզգենոյր Ահարոնն հին,
Երկոտասան ակունք ի նմին,
Բայց այս պայծառ էր քան զնոսին։

Զվարագ գովեմ ըզգանկալին,
Համանըման Էջմիածնին,
Աթոռ մերոյ Լուսաւորչին,
Պարթեւազին սուրբ Գրիգորին։

Վարագ նըման է տապանին,
Զոր եւ կազմեաց հայր մեր նախնին,
Մարդ եւ գազանք անդէն ապրին,
Աստ կրաւնաւորք բազում բնակին։

Վարագ նըման լեառն Սինային,
Աստուածախաւս մարգարէին,
Թաբաւր, Հերմոն ի սա չնմանին
Այս գերագոյն է քան զնոսին։

Քարինք տեղւոյս են պատուական,
Որք ի լուսոյն շափիւղացան,
Ծաղկունքըն բիւր հազար բուսան,
Յառողջութիւն վիրաց մարդկան։

---

11. B. Վարաք ([illegible])։ — 13. C. փառքն։ — 16. Ահարոն։ AB. Ահարոնին։ — 17. B. երկոտասան։ — 19. C. Վարագ։ — 22. C. պարթեւական։ — 25. C. մարդ անասունք։ — 27. B. էր։ — 29. B. Թափօր… նովաւ պարծին։ A. ի սայ չըՕնմանին։ C. սմայ։ — BC. տեղոյս։ — 32. AB. զոր ի լուսոյն շաղախեցան։

Անդէն Թաւդիկ ճրգնաւորին,
Ընդ Յովելայ աշակերտին,
Տան ուր անսուաղ կեցեալ նոցին,
Խաչն յայտնեցաւ փառաւք տեսին:

Յոր Տէր Յիսուս իջեալ ի նմայ,
Ի լեառըն սուրբ ի Գալիլեայ,
Խընկաբեր լեառըն ուռճանայ,
Խաչեալն Աստուած յայտնի ի սմայ:

Ի հրեշտակաց բարձեալ բերի,
Անդ ուր Թաւդիկ կայր աղաւթի,
Խաչն ի լուսոյն տիպ յաւրինի,
Երկըրպագեմք այսըմ հրաշի:

Երկոտասան սիւն լոյս իջան,
Հոտըն բուրէր անմահութեան,
Արգել ըղլոյս արեգականն,
Եւ կանգնեցաւ մինչեւ ցինն ժամ:

Զքեզ աղաչեմ սուրբըդ նըշան,
Քրիստոնէից լեր պահապան,
Եւ անդադար բարեխաւսեա՛.
Յորժամ գայ Տէրն ի դատաստան:

**Զ**Միածինըն կուսածին
**Ա**ղաչեցէք վասն իմ անձին,
**Ք**աւիչ լինել իւր ծառային
**Ա**նմահ արքայն Տէրն երկնային:

---

35. A. Թադիկ. B. Թօդիկ. C. Թաւթիկ: — 37. C. աւուր: AB. անսրվաղ: C. կեցին: — 38. C. յայտնեալ: — 39. AB. զոր: — 40. B. [illegible] ի: — 42. A. սը°մայ: B. ի նըմայ: — 44. C. Թաւթիկ: — 45. A. ի լուսւոյն: — 46. AB. հրաշալի: — 48. C. բուրէ: — 49. C. զլոյսն արեգական: — 53. AB. [illegible] եւ: B. կը յաւելու..., առ այն: — 53–54. B. Երկու տողերս տեղափոխած է:

Քանզի ստեղծաւղն ամենայնին
Արժան առնէ իւր հանդըստին
Յուսացելոցս որ ի նա դիմին
Ի յաւրն ահեղ հրապարակին:

---

## 8.

## ՏԱՂ ՈՂՈՐՄՈՒԿ

Զառածեալ մեղօք եղկելի,
Թշուառացեալ մարմնով եմ գերի,
Մի՛ լինիր անյոյս եւ թերի.
Սիրտ իմ, ընդէ՞ր տրտմում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրտմում ես:

Աստուածածին սուրբ կոյս է,
Մեղաւորաց դարձ եւ յոյս է,
Ապագայիցն եւ այժմոյս է.
Սիրտ իմ, ընդէ՞ր տրտմում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրտմում ես:

Քաջալերեաց սիրտ եւ խրնդա,
Ուրախ լեր անձն իմ եւ ցրնծա,
Զուարճացիր դու եւ բերկրեա՛.

---

59. A. ամենայնի. C. ամենի: — 61. C. յուսացելոց: — 62. B. ի յօր C. ի յաւուրն:

---

**8.** Բնագիրը առնուած է Թ. 160, Թղ. 189ա. համեմատուած է Թ. 436, ԻԱ. Թղ. 42բ (= B) Չէօպանեանի Տ. Վ. Պալեանի (Բիւրակն, 1897, էջ 738—739) հրատարակութեան (= C) հետ: Հմմտ. Հանդ. Ամս. 285:

Խորագիրն այսպէս ունին AC. իսկ B. Տաղ անուշ:

2. B. զայրացեալ: — 2. B. Թշվառական: չիք եմ: — 5. 10, 15, 20 BC. սիրտ իմ վասն ընդէ՞ր: — 7. Bի մէջ է չորրորդ տուն: — 9. B. ապագային:

12. Bի մէջ է երրորդ տուն: — 12. B. քաջալերեայ, խրնդայ:

13. A. անձն իմ: B. ցրնծայ: — 14. B. բերկրեայ:

Սիրտ իմ, ընդէ՞ր տրրտում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրրտում ես:

Աշխարհս ամենայն ունայն է,
Թափուր եւ դատարկ միայն է,
Զարութիւն ի քենէ հանէ.
Սիրտ իմ, վասն է՞ր տրրտում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրրտում ես:

Բաղ եւ Նուաղ արարած
Որ կողոպտէ զմարդն ի կենաց,
Պարտիս ապաւինիլ յԱստուած.
Սիրտ իմ, վասն է՞ր տրրտում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրրտում ես:

Ի քեզ յուսանամ Տիրածին,
Մարիամ սուրբ Աստուածածին,
Երկրրպագեմ քո Միածնին.
Սիրտ իմ, վասն է՞ր տրրտում ես.
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրտում ես:

Առ յինէն ի քեզ ղայս դրրուատ,
Մի՛ լինի բրնաւ յուսահատ,
Զաքարիաս երգէ զայս դրրուատ.
Սիրտ իմ, վասն է՞ր տրտում ես,
Ուրախ լե՛ր, ընդէ՞ր տրրտում ես:

---

17. B. երրե– Բ. տուն. Աշարհս: — 18. B. Թափոր: — 19. B. ի քէն:
22—26. C. չունի այս տունը: — 24. B. Աստուած:
29. B. երկիր պագանեմ Միածնին: C. Միածին:
32. B. յինէն զայս խրատ: — 34. B. Զաքարեայ խրատ:

## Թ.

# ՏԱՂ Ի ՍՈՒՐԲ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ

## Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

Ամենօրհնեալ սրբուհի,
Դուստրը Դաւթի արքայի,
Զքեզ խօսեցան հարսն երկնի,
Մայր եւ ծընօղ Յիսուսի:

Բարբառեցան քաղցրաձայն,
Մարգարէքն ամենեքեան,
Ի պըտղոյ արդարութեան
Բուսանի ծառ աննըման:

Գեղմըն ծածկոյթ սրբութեան,
Ի կալըն Գեդեհոնեան,
Յօղոյն դու ընդունարան,
Յերկնից որ ի քեզ իջան:

Դասք երկնից զարհուրեցան,
Ի ձայնէ Գաբրիէլեան,
Յորժամ գոչեաց քաղցրաձայն,
Թէ “Ուրախ լեր Մարիամ„:

Երկինք 'ւ երկիր ցընծացան,
Արարածք նորոգեցան.

---

**Թ.** Բնագիրը առնուած է Գ. Մսերեանի հրատարակութեան (A) Ճռաքաղի ԺԷ (Գ. 1861/62, էջ 62—63), համեմատուած է Մատենադարանի Թ. 577, Թղ. 38ա—39ա Տաղարանին հետ (B), որ կիսով միայն ունի տաղը: Հմմտ. Հանդ. Ամս. էջ 286—287:

Խորագիրն A ունի “Զաքարիայի ուրումն երգ ի Ս. Կ. Մ.„ B. “Տաղ սուրբ Աստուածածին:„

12. B. գալն: A. գեդէոնեան: — 14. B. զեղան:
19. B. չունի 'ւ: — B. պանծացան:

Խայտան մեռեալքն ի տապան,
Զ' ի մահուցն ազատեցան։

Զքեզ նախ Ադամ գուշակեաց,
Յորժամ կընոջն «կեանս» ասաց,
Թէ յԵւայի դըստերաց
Կոյս ծընանի լոյս ազգաց։

Էնն եմ ասաց Մովսիսի,
Աստուած բոլոր համայնի,
Զինչ մանանայն սափորի,
Իջումն յարգանդըն կուսի։

Ընդ մեզ հաշտեա, Սըրբուհի,
Գըթա ի մեզ, Տիրուհի,
Փըրկեա ըզմեզ, Թագուհի,
Աստուածածին պանծալի։

Թագաւորին դու խորան,
Երկնաւորին բնակարան,

---

21. B. խնդան։ — 22. B. մահու։ — 23. A. վըկայեաց։ — 24. B. կընոջ։ — 27. A. Էն։ — B. Մովսէսի։ — 29. A. զի։ — 30. A իջնում։ — B. յարգանտն։

31—42. B. տունք հետեւեալքն.

Ընդ նախահօրն Ադամայ,
Խօսեցաւ կինն այն Եւայ,
Պտղոյս առեալ եւ կերայ
Թ' Աստուած լինիմ եւ չեղայ։

Թէպէտ եւ ինձ պատշաճ է,
Աստուած լինիլ յայլ առնէ.
Եւ քեզ լինիլ հնար չէ,
Զի վասն քո գրեալ է։

Ժամանակ գայ անցանի,
Վ՚եց դարըն գայ կատարի,
Կոյս մի դըստերցն Եւայի,
ԶԱստուած մարմնով ծընանի։

Հոգւոյն սրբոյ օթարան,
Աստուածածին քաւարան:

Ժողովեալքս ի քէն հայցեմք,
Արտասուելով աղերսեմք,
Մայր Աստուծոյ դաւանեմք,
Ցուսով քեզ երկրպագեմք:

Ի քեզ յուսամք մեք հոգւով,
Հայցեմք յոյժ աղերսելով,
Գըթա ի մեզ դու սիրով,
Ի յերկինս հրաւիրելով:

Լուսատեսիլ Մայր եւ Կոյս,
Խաւարելոցըս դու յոյս,
Մեղաւորաց զարդ եւ լոյս,
Օրհնեալ պտուղ քո եւ բոյս:

Խանդաղատիմք բերկրալի,
Օրհնեմք զծընունդ քո յերկրի.
Ծընար դու դուստր Եւայի,
Եղեր երկնից Թագուհի:

Ծընունդք Ադամեան տոհմի,
Խայտան՝ տան ծափ ըզծափի,
Պարեն ի մէջ Սիոնի,
Ի ծոց քո յառագաստի:

Կանաչ յարմատոյ բուսեալ,
Զոր եւ Մովսիսի տեսեալ

---

43. A. ի քէն: — 46. A. հարսնարանդ: —
48. A. խաւարելոց ես դու լոյս:

49. A. զարձ օրհնեալ: — 52. B. քոյ: — 55. B. Թաքուհի:

55. A. ծնունդ: B. ծննունդք Ադայմայ: —
56. B. ծափըս ծափի: — 58. B. քոյ առագաստի: —
59. B. յարմատոյն: — 60. B. Մոսէսի:

Զմորենին անկէզ վառեալ
Զծնունդ քո նշանակեալ։

Հուրն Աստուած ի քեզ իջեալ,
Եւ դու անկէզ մնացեալ,
Ի ծոցոյդ մեզ լոյս ծագեալ,
Զաշխարհըս լուսաւորեալ։

Ձայն որ յերկնից վըկայեաց,
Ի Յորդանան քարոզեաց,
Զքո միածինն դաւանեաց
“Դա՛ է որդի իմ Աստուած„։

Ղամբարափայլ ջահըդ վառ
Աթոռ հրեղէն բարձըր կառ,
Աստուածածինըդ պայծառ,
Մեզ լըսեցո՛ քոյդ բարբառ։

Ճեմես ի վերինդ խորան
Աստուածութեան տեսարան,
Լուսափայլ քոյդ տեսութեան
Ըզմեզ արասցես արժան։

Մարգարէիցըն հանդէս
Գուշակ զանազանապէս,
Եւ խօսեցան միապէս
Ըզծընունդ քո յայտնապէս։

Յաւաջըն անդ ի դրախտին,
Ուր խաբեցաւ մեր նախնին,
Տէրըն խոստացաւ նոցին,
Թէ Աստուածանման լինին։

---

67. A. Թաբօր, Յորդանան, գոչեաց։ — 70. B. իմ որդի։

70. [illegible] B [illegible]

Նոր նորոգեցան կըրկին
Հնացեալն ի հող տապանին ,
Եկն ի ծընդեան քո կայրին ,
Ետես ըզկոյսն եւ զՈրդին :

Շարք աստեղաց շըրջանակ
Պար առեալ քո բոլորակ ,
Քո աստղ նոցա հեղինակ
Բարձր ի վերին պարունակ :

Ո՛չ ոք չըկայ նըմանակ
Քոյդ ծընընդեան օրինակ .
Բայց Որդիդ քո միայնակ
Ինքն իւր լեցի օրինակ :

Չըկարէ միտք հողեղէն
Ստեղծուածի համօրէն
Ի սուրբ ծնընդեանըդ խորհուրդ
Հասանել թարգմանօրէն :

Պարտեաւ Եւայն ի յօձէն
Պարտակեցաւ ի թըփէն ,
Անկաւ ի բարձր դրախտէն ,
Դու դարձուցեր նոր անդրէն :

Ջուրըդ բըղխեալ յԵդեմայ ,
Չորս վըտակըդ յորդ խաղայ ,
Չորս կողմ՛ երկրիս ընթանայ ,
Չորս տարերըքս ուրախանայ :

Ա՛ստ Յորդանանըն գայ ,
Լիբանանէ խըրտըղայ ,
Ծոցոյդ ծագեալ Մեսիայ ,
Բուսեալ յեզըրն Յորդանայ :

Սարսեալ դողամ եւ սոսկամ,
Ցոյժ զարմացեալ հիանամ,
Ըզնա որ ըստեղծ ըզԱդամ,
Զիա՛րդ ծընար, Մարիամ։

Վայելչագեղ անթառամ
Մըշտապայծառ յամերամ,
Բարեօք հարուստ եւ փարթամ,
Դուստր Աննայի, Մարիամ։

Տո՛ւն ես մեծին Աստուծոյ,
Տաճար կազմեալ ի լուսոյ,
Ցորժամ ելնեմք ի մարմնոյ,
Ըզմեզ առցես տունըդ քո։

Րոտեա՛ դաւանողըս քո,
Րամից վերնոց դասեցո՛,
Լըսել ըզձայն բարբառոյ,
"Եկայք օրհնեալք հօր իմոյ"։

Ցաւալից մեղօք լըցայ
Հոգւովըս ես Զաքարիա.
Առ ոտս անկեալ քո եւ լայ.
Թողութեան արժա՛ն արա։

Իւծեալ ժողովս որ աստ կայ՝
Ի քեզ դիմեալ ընթանայ,
Մայր Աստուծոյ հաւատայ,
Կոյս Մարիամ գերակայ։

Փառըս տացուք հըզօրին,
Քոյոյ անարատ գառին՝
Անճառ եւ սուրբ միածնին,
Թագաւորին անմահին։

Քաւակերպեան աթոււն
Բազմեալն ի բարձրը գահին՝
Անմեղ անարատ գաւին
Տաշխ եւ կինամոն խընկին:

---

## 10.

## ՏԱՂ ՎԱՍՆ ՂԱՐԻՊՈՒԹԵԱՆ

Ի քէն Տէր հայցեմ, Հայր գըթական,
Պարգեւեա ինձ իմաստ տեսական,
Երգել բանս վասն ղարիպութեան,
Որ լինի ի յերկիր հեռաստան:

Ղարիպն թէ լինի մեծատուն,
Խելաւքն եւ մըտաւքն իմաստուն,
Նա յիմար թուի յաչս ամենուն,
Եւ կենայ նա տըրտում զօրն ի բուն:

Այլ թէ զղարիպն ասեմ ողբալի,
Անձանաչ՚ւ աւտար տեղ հանդիպի,
Միտ ածէ զիւր եղբայրն սիրելի,
Սիրտն ողբայ եւ աչերն արտասուի:

---

**10**. Բնագիրը առնուած է Մատենադարանի Թ. 405, Թղ. 10բ—12ա Ձեռագրէն (A). համեմատուած է Կերլ. Հայոց Ս. Երուսաղէմի Եկեղեցւոյն Թիւ ԽԳ. ա. Թղ. 47ա—48ա Ձեռագրէն (B) եւ Կոստանեանցի հրատարակութեան (Մկրտիչ Նաղաշ եւ իւր տաղերը, էջ 45—46) հետ (C): Հմմտ. Հանդ. Ամս. էջ 288:

Խորագիրը A. ունի. "Տաղ գեղեցիկ ոտանաւոր վասն ղարիպութեան:" BC. "տաղ վասն ղարիպի:"

2. B. հայցեմք: — 3. C. պարգեւէ B. պարգեւայ: C. տխրական: — 4. A. զբանս: – 5. C. լինի ի:

6. A. թէ լինայ: A. եւ խելաւք եւ ...: — 8. AB. նայ: A. թըւի: B. թվի: — 9. A. նա զօրըն բուն:

11. AC. լինի ՚ւ: C. յօտար: — 12. A. ի միտ: B. եղբայր. C. եղբարք: — 13. A. արտասվի:

Բամեալ խիստ խեղճ ՚ւ ողորմ նա կենայ,
Զօրն ի բուն սիրտն չուրախանայ,
Թէ լինի որ յանկարծ քաղցենայ,
Երես ի քարշ երթայ մուրանայ:

Իսկ թէ լինի փակած դրունքն ամէն,
Սիրտն ողբայ նա եւ դառնայ ի դրռնէն,
Եւ կենայ տրտում զաւրն ամէն,
Արտասուքըն թափի յերեսէն:

Պարտաւոր կարծէ զինքն ամենի,
Եւ մեծի եւ փոքրի հնազանդի,
Ըզտըրխմար եւ զանգէտըն շահի,
Մի՛թէ իւր բազում մեղքըն քաւի:

Զինչ ղարիպ կայ յերկիր հեռաւոր,
Ամենուն խելքն ու միտքն է մոլոր,
Թէ լինի խիստ փարթամ փառաւոր,
Դռնէ դուռըն որ շըրջի գլուխ ի կոր:

Աւաղ զղարիպն ասեմ եղկելի,
Որ ի յաւտար երկիր հանդիպի,
Ամէնքն քան ըզդըրախտ ծաղկալի,
Նա կըտրած քան ըզճիւղ մի ծառի:

---

14—17. B. չ——նէ: — 14. A. նայ: — 17. A. եւ մուրանայ:

18. A. դրունք: — 20. C. չ——նէ նա: — 21. C երեսէն: — 22. B. ամէնի:

23. B. փոքու: C. փոքեր:

24. BC. ըզտըրխմարն: — 26. B. երկիր հեռօոր:

27. A. ամէնուն:

27. B. աւտար ի յերկիր C. յօտար երկիր:

29. BC. չ——նէն որ: BC. գըլուխ ի կոր:

32. B. ամենեքեան քան...: C. ամենքն են քան...:

33. B. նայ:

Քան ըզձուկն ի ջրէն նա հանած,
Որպէս հաւ յերամէն բաժանած,
Որպէս ձագ ի մաւրէն մոլորած,
Զի եղբարց սիրելեաց է զատած:

Այլ թէ շաքար ուտէ նա լեղի,
Թէ վարդով զուրուցնան նա փուշ թուի,
Եւ կենայ զաւրն ի մէջ ղուսայի,
Եւ գդիւր կեանքըն դիժար համարի:

Բամից դասք հրեշտակացն ամենայն
Ղարիպին լինիցին պահապան,
Որ ի յաւտար աշխարհ հեռաստան,
Մինչ ի յիւր տեղն հասնի յօթեւան:

Երգողի այս տաղս ղարիպի,
Մեղաւոր եւ անմիտ Զաքարի,
Մեք ամէնքս եմք ղարիպ աստենի,
Զի այն կեանքն է մեզ տուն հայրենի:

---

34. C. է ի ջրէն: — 35. A. որպէս հաւնէր ամէն բաժանած: C. երամէ. — 36. A. ձագն: C. ի մօրէ:

38. B. նայ: — 39. BC. զըրուցեն փուշ...: B. թվի:

41. A. գթիւր կեանք: B. դըժար:

42. C. դասքն հրեշտակացն: — 43. A. լիցին:

44. C. որ յաւտար ի յաշխարհ...: B. որ աւտար ի յաշխարհ:

45. C. մինչ յիւր: A. յաւթեվան: B. մինչ ի իւր հասանի յօթեաւն:

46. B. երգաւղի: BC. տաղիս: — 48. A. ամենքս:

48. A. այս տենի: C. յաստենի:

# ԿԱՓԱՑՔ Ի ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ

# ՄԵԾԻՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

## Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

## 1. ԿԱՓԱՅ Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

*Խիստ շատ ականջ դրիր արքայ,*
*Մարմնաւոր դիւիտ սատանայ,*
*Զվերին նախախնամաւղն յիշեա՛յ,*
*Որ շուն լեզուն կարկի դմայ:*

## 2. Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

*Յաւլաւմպիայէ ծնունդ*
*՚ւ ի յամուլ արգանդէ անախտ,*
*Արեւակէզ հիւանդիս*
*եւ բերես զբժիշկդ գոված.*
*Փիլիպէ շարբաթ կապէ*
*ինձ զուլալ ու ապուխայաթ,*
*Տամ զիմ անձս ի քեզ ի մահ,*
*զիմ արեւըս քոյին կենաց.*
*Աքանդար դու ինձ հաւատայ,*
*քեզ կապեր եմ շիրին շարբաթ,*
*Շամրաս ծաղիկ եւ քրքում,*
*եւ եղէգնախունկ նարդոսաց,*
*Հիրիկ կինամոն չըքնաղ,*
*եւ զըմուռն ընդ խալուէս խառնած,*
*Ըմպէ թագաւոր անվախ,*
*փարատէ զցաւըս Տէր Աստուած:*

## 3. Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

*Խաշինք ՚ւ անասունք եւ հաւտք*
*արքայիդ եկեալ հնազանդէր,*

---

**1.** Ձեռ. Թ. 98. Թղ. 27բ.
**2.** Թ. 98, Թղ. 34ա: Խորագիր չունի. Վերջն է լուս. էջ նշանակուած Զքրէ. Եւ տող 5. Զք:
**3.** Թ. 98, 3[illegible]բ: Ի լուս. Զք.:

Ծառեր կացնահար ծրղեր
հատքն ըղքեզ ի յոյսն է բարձեր.
Սիրով եւ քաղցրիկ հողմով
ճաճալով ի քարշ էք ելեր,
Հողմն ըղմանրամաղ փոշին
մրրրեր 'ւ ի յաւդքն է ցրնդեր:
Գունդ գունդ շամանդաղ կապեր
Թաղաբանդ խաւար գոլոշեր,
Ամպոյն ահագին գոչեալ
եւ փայլատակմամբ գոռացեր,
Սաստկութեամբ որոտալով
Դարեհի բանակն է մաղեր,
Ջաւրքըն սրտաբեկ եղեր
եւ հեծելն ապուշ մնացեր:
Զհաւտն է ի բաց առել
ի ծառ այլ ոստաւք է բարձել,
Հոսումն է հողմոց հնչել՝
բալն ու մուխն ի վեր վերացել,
Աւդըն շամանդաղ առել՝
գոլոշիքն ի յաւդքն է ցրնդել,

---

Տող 4 հողն. 6. գօջեալ: — 7. սասկութեամբ: — 14. զաշխակալ դարա: Տպեալն Կոլեոն. 131. համեմատութեան իր ձեռագիր Թ. 319, 102ա. արդեանց ալ իր գտնենք հոն տող 9—14 այսպէս.

Ըղհօտս է ի բաց բըռնէր,
'ւ ի ծառոց ոստովքն է բարձեր.
Հոսումն է հողմոց հընչել,
բալն եւ մուխն ի վեր վերացեր:
Աւդըն շամանդաղ առեր,
գոլորշիքն ի յօդն էր ցընդեր,
Տեսօղքն ահաբեկ եղեր,
յոլովից են կարծիս առեր:
Հօտապետ տար գծառերդ ի քարշ,
լեր օժանդակ ասեն քեզ վաշ,
Զաշխարհակալդ արա ի հրաշ,
որ քեզ ասեն յոլով շապաշ:

Հետեւաբար վերջին տողերն չեն Զաքարիայի, այլ Խաչատրոյ կամ Գրիգորի:

Տեսողքն աչաքեկ եղել՝
  յոլովից են կարծիս առել:
Հաւատապետ տար գծաւերդ ի քաշ,
  լեր օժանդակ 'ւ աւէն քեզ վաշ.
Ջաշխարհակալդ արա ի հրաշ,
  որ քեզ աւէն յոլով շաբաշ:

## 4. Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

Քոյ քունդ արթնութիւն արժէ.
  զիմաստնոյն բանն առ քեզ բերեմ,
Որպէս Սողոմոն գըրէ,
  սիրտս արթուն է 'ւ ես կու ննջեմ.
Գեմ քունն է քնար կենաց
  ու դարման մարմնոյն, 'ւ իրաւեմ.
Բայց յոլովըն չար բերէ,
  զայս ասեմ բնաւ չամաչեմ:
Քնար եւ երազ տեսար
  բախտաւոր դու ի քնութենէ,
Նախախնամողըն վերին
  հանապազ քեզ առաջնորդէ.
Զխարդ զուրուական պատկերդ
  այաչես նայ քեզ պատեհ չէ,
Ծանիր զարարիչն Աստուած
  որ արար զէակս յանգոյէ:

## 5.

Դառնատեսիլ այս խեցգետին,
  որ աւրինակ էր Հայկազին,

---

**4.** Թ. 98. Թղ. 38ա: Հ. Տաշեան, անդ, դնէ եւ կայ դոյ, որ Թ. 319. Թղ. 102ա ունի միայն նախընթաց տունը «Քո քունդ արթնութիւն արժէ.» այսպէս ալ որդէն կը նկատէնք Թ. 98ի մէջ, ուր Զաքարիա էրէն կը վերագրէ ԶՔ համառօտագրութեամբ միայն յաջորդ 4 տուներըʼ Քընար եւ երազ էտն, ետք նախորդ մասը Խաչատուրայ: Թ. 319ի մէջ կան տարբերութիւններ 1. քո: — 3. գէմ. որ դարման մարմնոյդ իրաւեմ:

**5.** Թ. 98, Թղ. 51Աա. այս հատուածն հրատարակած է Հ. Տաշեան, անդ 132: Առաջին մասը, ինչպէս

Զբարբս բնակչայրն յայտնողին,
  բարառնաբար ազգի ի սմին.
Բայց այս կարի յոյժ մեծագին
  'ւ ինքս աւրինակ է բանսարկուին,
Որով եգիտ ըզմուտ չարին,
  'ւ արար զԱդամըն տըրտմագին:
Անունդ յիրաւի է քոյ
  խեցգետին ու դառնատեսիլ,
Ցայն աշխարհն որ դու լինիս
  անհեդեդ ու գազըրատեսիլ.
Երբ որ տանուտէր լինիս,
  վայ գտարին ցասըմնատեսիլ,
Ով որ ծընանի ի քեզ
  թշուառաբախտ ու սախտագիլ:

Զատուրէան.

Սարատղանայ աւեն սմայ,
  եւ խեչեփար յորջորջի սայ,
Ի ճախս դաշտաց սայ կու կենայ,
  չեկ տարին տանուտէր կու գայ:

## 6. Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

Բարկացեալ Աղէկսանդրի
  եւ խնդրէր զուրն երկայրի,
Սպանանել կամաւք զՀքեզ տիկին
  Կանդակէ կանանց գովելի.

---

դարձ կը փոխուի, Խաչատուրյ չէ ուրեմն է (համմ. Թ. 319, Թղ. 132ա). Զատուրէանը յաջորդ երկու տողն է միայն: Տարբերութիւններ Թ. 319ի մէջ. *խեցգետնին*. — 2. *ինքն*... *էր*: — 4. չէ տողը: — 5. *քո*: — 6. *անհեթեթ*: — 7. *կամ ում տանուտէր*...: — 8. *ի քեզ թուշուրաւ բախտ սախթագիլ*:

**6.** Թ. 98, Թղ. 63բ: Առաջին 3 տողերը Խաչատուրյին ապահովուած, որոնք կը գտնուին նաև Թ. 319ի մէջ: Զատուրէանը ԶԲ համարակալած է լոկ. կը սկսի *Կանդակէ խանդաղատեալէն*:

*Չհնազանդիմ քեզ ով դշխոյ*
*յԱդամայ ծնունդս ամենի.*
*Նախախնամող դու վերին*
*դարձուցես զիմ չարն ի բարի:*
*Կանդակէ խանդաղատեալ*
*առ արքայն Մակեդոնացի,*
*Քո բարեացըն փոխ առնեմ,*
*արքայիդ գերակայ վեհի,*
*Որով ազատեցեր զհարսն իմ*
*քեզ շահեր անուն գովելի.*
*Վանեցեր ըզփարաւոն*
*եւ եղեր նըման Մովսէսի:*

## 7. ԶԱՔԱՐԻԱ ԵՒ ԽԱՉԱՏՈՒՐ

*Կասսանդրեա՛ խաբեալ Ուղղոս*
*մատուցե՛ր դեղ մահարոս.*
*Զանհանդուրժականն եւ զնեղոս*
*ոչ դադարէր յաման նիւթոյս:*
*Աւաղ չարեացըն սոր եւ սոս,*
*որ չար գործեաց մեծ 'ւ ափսոս,*
*Զի Յուդայի նման Ուղղոս,*
*որ եւ մատնեաց զՅիսուս Քրիստոս:*
*Եւ ահայ դեղ տայ քեզ Ուղղոս*
*մի ըմպեր դու Աղէկսանդրոս.*
*Զմահըն քոյ լսէ աշխարհս,*
*աւաղեն թէ հազար ափսոս:*
*'Ի ի ճարկէ ճարակ ընգնիս,*
*զկինդ բերես զՀռաւքսիանոս,*
*Եւ մայրըն քո լսէ զբաւթդ,*
*որ անուընն է Աւլոմպոս:*
*Գիշերս յերազին տեսայ,*
*որ կարկուտ երեկ յիմ վերայ,*

7. Թ. 98, Թղ. 68ա. Ինչպէս կը նշանակուի վեր-ջէն՝ խառնուրդ մըն է Խաչատուր եւ Զաքարեայի:

Իմ թագն ի գլխուս անկաւ
'ւ աչիւ լոյծ զարհուրեցայ.
Եւ սիրտս է տրտում դարձեր,
զի մահու նշան կ'երեւայ.
Նախախնամութիւն վերին
քան ըզքեզ ինձ ճարակ չըկայ:
Ուրախ կաց եւ դու խնդա՛,
զի դժարն դիւրին դառնայ.
Հանգիր յամենայն հոգսէ
խնդալով կեանքդ յերկարանայ.
Անցաւ 'ւ անցընոր կենաս
քան զբոլոր լուսին մըշտակայ.
Մեր շունչ ու հոգի ես դու,
Աղեկսանդր արքայից արքայ:

## 8. Ի ԶԱՔԱՐԻԱՅԷ

Ինձ հանց ուժ ու թեւ պիտէր,
որ թռչէի զինչ հաւ թեւաւոր,
Ի յիմ քաղաքն երթայի,
տեսանէի զմայրն իմ փառաւոր.
Միթէ չիջանէր այս հուրս,
ի սրտէս իմ կըսկըծաւոր.
Որ զիս ի ղափազ ածէր,
կու խոցէ քան զաւձ թունաւոր:

**8.** Թ. 98, 70բ. Խորագիր՝ ի Գրիգորէ Եպ. Զաքարեցւոյ ասացեալ. Սկիզբն նոյն Թ. 319, Թղ. 232ա որն է Ի Գրիգորիս կաթողիկոսէ ասացեալ արքային բերնէն. Ինձ անձն ուժութեան պիտէր, որ թռչէի զինչ հաւ թեւաւոր... Տարբերութիւններ. տեսանի. զինչ օձ. Տողն Սնէր... Եւ Հաւքսիանէ... չունի Թ. 319: Զարմանք է որ Թ. 98ի մէջ "Դադարեցար„ է դրած էր նշանակուած Զ.Բ, որ նոյնպէս յաջորդ տողերուն հետ՝ բայ է Քակեցեր... էր գտնուի նաեւ Թ. 319ի մէջ, որ էր լրացնէ նաեւ Թ. 98ի պակասն. վասն զի Թ. 98 "անչափ իցէ„ դրած էր տնէ ծանօթութեան. "Թուի տող մի պակաս գոյ, բայց յօրինակին թերութեան նշան ոչ գոյ:„ Լրացուցինք Թ. 319էն:

Ունէր ցաւն զարքայն,
եւ հառաչմամբ արձակեաց զհոգին.
Եւ Հռոքսիանէ ողբով եւ կոծով
տարեալ զմատն կալաւ զաչսն արքային։
Դադարեցա՛ր Աղէկսանդրէ,
հանգաւ աշխարհս ի դողմանէ.
Ձերծաւ կաւշիկդ ի յրռքէպէ,
եւ Թուրտ ի Թափ ձեռաց բազկէ։
Քակեցիր քաղաք ի հրմնէ,
բազումք ջընջան յիւրեանց տոհմէ.
Երբ քո աւուրքդ անչափ իցէ
Է՞ր շարժեցեր զազգս յաշխարհէ։

## Գ. ԵՒ ՀՌՈՔՍԻԱՆԷ ԱՍԷՐ ԶԿԱՓԱՑՍ ԱՌ ԱՂԷՔՍԱՆԴՐՆ

### Ի ԶԱՔԱՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՆԿԱՐՈՂԷ

Շուռ տուր տապանիդ ասեմ,
արի կաց այ իմ սիրելի.
Քանի կենաս յայտ զընդանդ
վայելէ ի լոյսն արեւի.
Արի ու քայլէ ոտաւքդ
կամ արա ինձ պատասխանի.
Սարսափն է ըսիրտս առեր,
Թէ եւ ինձ այսպէս հանդիպի։
Աւաղ Հռոքսիանոսի
որ եղայ ի տարակուսի.
Դառնութեամբ կենաւք շրջիմ
զաւրն ի բուն ողորմ ու լալի.
Խնդրեմ զառաջին ըզսէրդ
ի քէնէ որ խանդաղատի.
Շատ խասրաթ ունիմ առ քեզ
որ ճարտար լեզուն քո խաւսի։

Գ. Թ. 98, Թղ. 73ա։

*Զայսէ աշխարհական ի գերեզմանէն առ հոռոմքրիստոնեայս, եւ ասէ զկաֆայս. ի Զաքարիայէ եպիսկոպոսէ :*

Խաբող 'ւ անցաւոր էր կեանքս
   որ անցաւ նման երազի.
Ցանկարծ ցաւըն գիս էառ
   'ւ ես ի յիս յաջէպ մնացի.
Ընդէր դըրիք յէս զընդանս
   խոր ու գէճ 'ւ որդունքն աւելի.
Զիս տեսէք ձեզ ճար արէք,
   որ ամէն ծընեալ մեռանի:
Ես որ ի տապանս իջայ
   նայ դարձայ ի հող 'ւ ի փոշի.
Ոչ գալ 'ւ ոչ գնալ ունիմ,
   ոչ խաւսել բանիկ մի քանի.
Կամ տարեկուսեալ աստէն,
   թէ մեղաց գիրքս մեր ջընջի.
Ցանկամք յարութեան աւուրն,
   որ գոչէ փողըն հրաշալի:

## 10.

Աւձն էր կորըստեան պատճառ
   որ եհան զԱդամ ի դրախտէն.
Հանց Նեգտանիբոս արար՝
   զկինն եհան ի Փիլիպոսէն.
Ի կերպ վիշապի դարձաւ,
   եւ գոչեաց սաստիկ մեծաձէն.
Շընչալով առ նա եկեալ,
   եւ առնոյր ըզհոտն ի դիմէն:

---

10. Թ. 98, Թղ. 6բ—8բ. Հ. Տաշեանէ (անդ) հետեւելով Զաքարիայի կը համարէ իր շայր, Բայց էջ էջ տողեր Խաչատրոյ կը Բարէն, վասն զի կան Թ. 319ի մէջ. այսպէս սկզբը Թ. 319, 16ա ունի “Աւձն է կորըստեան պատճառ էտն, էա յաջորդ տողերն ալ մինչեւ «խեկ նախանձ...» կը գտնուի հատուած հատուած Թ. 319ի մէջ: Թ. 98. ունի տող 1. Այն էր կորստեան...: — 4. չունի Թ. 98:

Սողաց եւ ի գիրկն եղաւ՝
    շունն առնոյր զհոտն ի դիմէն։
Աւձու հասիաթն է շատ,
    թէ քըննեն ճարտարքըն մըտով,
Որպէս Մովսէսի եղեւ
    գաւազանն ի յաւձ դառնալով.
Կամ զպըղընձի ըզաւձն
    ի ձողի ծայրըն կախելով.
Որ էր նայ աւրինակ փրկչին
    ի խաչին նայ բարձրանալով։
Ձաւձէն շատ զըրոյց գիտեմ,
    բայց չկարեմ գըրել համառով.
Աւձն է իմաստուն խելաւք,
    հրամայեաց Տէրըն կենարար.
Աւձն է վիշապի ծընունդ՝
    Սողոմոն գրեաց զնայ հանճար.
Աւձն որ ի ձուէն ելաւ,
    նա կոխէ զերկիր հաւասար։
Իսկ Նախանձ գտակ չարին
    զաւձն արար իւրըն բնակարան.
Պատրեաց նա զնախամայրն՝
    ճաշակմամբ պտղոյն զպատուիրան.
Ադամ ձեռաւքն Եւայի,
    'ւ ի յանճառ լուսոյն զըրկեցան.
Տէրն եկեալ ձայնէր. ո՞ւր ես.
    նա լալով ասէր թէ մերկ կամ.
Թագեան թզենեաւ սփածան
    'ւ ի նոյն ժամն ի դրախտէն ելան.
Անմահ մնալոց էին,
    բաց անկան եւ աղտեղեցան.
Մեռան ի դժոխքն իջան
    վեց հազար ամ արգիլեցան.
Բանդեալ խաւար զընդանաւ
    չարաչար նոքա տանջեցան։

---

10. Ցաւձէն։

Մինչ էջ նայ մարմին էառ
ծոցածին բանըն հայրական,
Կամաւ Հաւր եւ սուրբ Հոգւոյն
սիրով ել ի փայտըն մահուան.
Զսատանայ խաչիւ կապեաց
եւ ընկճեաց զիշխանըն մահուան·
Առեալ զսիրանունդն Ադամ՝
ճոխ փարթամ ի յերկինս եհան:
Ենովք յառաջին դարին
խաւսեցաւ ընդ նախաստեղծին,
Զտրտմութեան աղանդ պահեալ՝
հայրենի գոլ պատուիրանին.
Զպարտիս նախահաւրն վարկեալ
զչարչարանս կալեալ ի յանձին,
Զաւրէ զբնութիւն մահու
փոխեցաւ ի դրախտն առաջին:
Ընտրեալ մեծին Մովսիսի
աշակերտս ի Ղեւտականէ
Սուրբ Հոգւովն ասէր վանես
զեւթն ազգիս յԱսորեստանէ.
Զերկիրն Աւետեաց տիրես՝
զցանկալի զմայր Սիոնէ:
Խնդայ նախահայրն Ադամ
գայ ծնանի Հաւր Բանն ի կուսէ:
Այս Յեսսեայ որդի Դաւեայ
եւ մաքրեալ ի յորովայնէ,
Հարեալ զազգս մեծամեծս
զԱսուր զՂովտ զքաջն Ամաղեկէ.
Տեսեալ այր մի կոտորէր,
հարցեալ ո՛վ ես յիսրայէլէ·
Ասաց զաւրութեանցն եմ պետ՝
յաւգ եկի քեզ յառաւաւտէ:
Դանիէլ մարգարէին՝
զծովն ետես չորք հողմ բախէին.
Զորս գազանք ելանէին
չար յետին էր քան զառաջին.

Աւրինակ Թագաւորաց
  Պիւրոսի, Պարսից Դարեհին,
ԶԱղէքսանդր զՄակեդոնին
  չար ժանեաւքն էր նման նեռին:
Սա ետես ըղձին աւուրցն՝
  ըղնսատեալն ի Քերովբէին,
Որդին գայր ընդ ամպս երկնից
  անպատում փառաւք Հայրենին,
Բիւրոց զաւրաց հրեշտակաւք
  ի դատել զազգըս հողածնին.
Արդարքն յառաջ ընթանան,
  մեղաւորքն ի հուրն առաքին:
Եղիայ մաքուր հոգւով
  մաշկեղէն զգեցաւ ի մարմին.
Մերկութեան նախնեաց նման
  տաժանեալ կրիցն եւ տուժին.
Յուսով պաղատէր առ Տէր
  մտանել ի տուն Հայրենին.
Հրեղէն կառաւք վերացաւ
  ի յանմահութիւն վերստին:
ԶԵսայեան աստուածաբան
  զարդարեալ յեւթնարփի շնորհէն,
Կայծակամբ մաքրեալ եղեւ
  ունելեաւն ի սերովբէէն.
Հրազէն բաժակաւ զմայլաւ
  յարաշարժ յանմահ աղբերէն.
Ընդ մարգարէին Դաւթի
  ընտրութեամբ յերկոտասանէն:
Առ քեզ դատաստան եկի
  Թագաւոր Դաւիթ մարգարէ.
Զոչխարն իմ զինին աւտարքն
  հիւրին ճաշ կու տան թէ ուտէ.
Նայ թողցէ զիւրեն հարիւրն
  որոճի միոյ ակնարկէ.
Ասաց թէ Մովսէս գրեալ
  ի յԱւրէնքն մահապարտ է:

Խաւսէր 'ւ առակաւք յայտնէր
   արքային թէ մահապարտ ես.
ԶՈւրիա մահու մատնես
   Բերսաբէ զկինն յափշտակես.
Ի խորոց սրտէ գոչեաց
   եւ ասէր լալով. Մեղայ ես.
Նաթանայ տեսեալ զղջումն՝
   Տէր Աստուած զմեղսն թողցէ քեզ։
Սողոմոն որդի Դաւթի
   ըզկանաց ազգըն կու գովէ,
Թէ ով եա իմաստութիւն
   դատերացն որ Նախամաւրն է.
Որպէս ուսայ իմ կուսին
   Գաբրիէլ իջմամբ աւետէ.
Աննայ 'ւ Եղիսաբեթի
   սուրբ ծննդոցն որ ի յԵւայէ։
Ըզմեծն ի ծնունդս կանանց
   եւ զընտրեալն ի յորովայնէ.
Գալ կուսին Մարիամու
   յարգանդի մաւրն երկրպագէ,
Խաղայ եւ ցնծայ մանուկն
   ելանել կամի ի յամէն
Յառաջընթաց Կարապետ
   Հաւր բանին իջման վկայէ։
'Տեառնէ փախեալ Յունան՝
   մտանէր ի ծով Նաւական
Ալէկոծմամբ ընկղմիլ
   կլանիլ կետին յորովայն.
Աւրինակ երեքաւրեայ էր
   Թաղման փրկչին յարութեան,
Թքմամբ ելեալ ի Նինուէ
   գոյժ տայր քաղաքին կործանման։
Նըման համեմատ սորայ
   Աղէկսանդր Մակեդոնացի,
Ապակէ տաղաւարաւք
   ծովն իջեալ յանդընդականի,

Եղջեր երգեհոն թմբուկ
եւ ցընծղայս քընար տաւնայի.
Առ րիպավպքըն (?) խանդաղատ
զվեց հարիւրսն սու (?) ի կոնդակի:
Եկլաստիական վարժեալ
յարտաքին իմաստըն բանի,
Արիստոտէլ վարդապետն
կոչէ ծով ովկիանոսի,
Սա հիացեալ զարմանայ
թէ որքան կայտառք կան ի նմին.
Աւէ արարչին գիտակ
զթիւ համարն ի ջուր կենդանի:

## 11.

Մարմինն է ի խոտ նման,
որ ծաղկի. Դաւիթ վկայեց.
Եւ փուք է քամու նման,
Յոբ ասաց 'ւ Ելիփազ գրեց.
Սողոմոն ստուեր երգեց,
Եսայի նոյնպէս վկայեց.
Սքանդար դու քեզ պէտ արայ
զի արիւնն ոչ ում չի մարսեց:
Շատ քաղաքաց մարգարէից,
բարձեալ զԱստուածն իւրեանց յուսից,
Յառաջ եկեալ վեհին պետից,
'ւ եղանակէն երգ գովեստից:
Շատք են եկեալ յաշխարհ բնաւից,
արքայածին թագաւորմից,
Բայց քեզ նման ի հողածնից,
չէ ոք տեսեալ յազգս արամից.
Խելաւք խիկար եւ յիմաստից
եւ յաջողած ի գիր բախտից[1]:

---

**11.** Տաշեան, անդ. 131. Զատաբէտայն երգեն՝ էր համարէ եւ ոչ այս. տես Թ. 98, Թղ. 18բ:

[1] Ըստ Թուղթ մի անկեալ:

## 12.

Զարքունիսն կանդակէ
տեսանէր մեծն Անտոգինէ
Որպէս զխորան Մովսէսի,
կամ զտաճարն ի Սողոմոնէ.
Ցոր սեղան կազմէր ի նա
սուրբ Հոգւովն Բեսելիէ,
Զենման անարատ գառին,
եւ անճառ բանին ի Հաւրէ.
Վերայ չորս անփուտ փայտից
հաստատեալ ըղհիմն ի քարէ.
Ձեղունքն էր մարգարտաշար
եւ որմունքն փայլմամբ ի սարդէ.
Գահոյքն ի շափիւղայից
կարկեհան բիւրեղ ի չինէ.
Բազմոցըն պալարակապ
եւ հիւսեալ յոսկի տաղանդէ։
Սեղանքն ի փղոսկրեից
եւ կազմեալ նա ի գոճազմէ.
Խարիսխ եւ սիւնքըն խոյակք
սեւ աթոռք ի հնդկականէ.
Պատկեր նկարեալ մարդոյ
էր անթիւ ի բազմութենէ.
Եւ կառք գերազէն ճախառք
ծիրանապաճոյճ ի կայծէ։
Հանդերձ ձիավար կառաւք
եւ կարծիս ունել յընթացէ։
Խորանաշատ կամարաւք
զերդ գարնան աղեղն ի յամպէ.
Որով աստուածոց պատկերք
խուժադուժ ի յարեան գունէ.
Ծառովք եւ ծաղկովք պողաւք
վարդ շուշան ի կանաչ թըփէ։

---

**12.** Տաշեան, անդ. 131· նոյնպէս։ Տես Թ. 98, Թուղ. 6 ա։ Այս ամբողջ համառօտը հմմտ. Թ. 319ի հետ (Թուղ. 205ա)։

Իսկ ի միւս սուրն առեալ
դշխոյին զձեռն Անտիգոնէ.
Ցուցեալ լուսաճանճ սենեակս
յաւդային անդամանդ քարէ.
Զարեգակն ի տախտակի
եւ զլուսինն ի տասնուհրնկէ.
Տանուտէրք մոլորականք
հրաճուէին ի բարկ աստեղէ։
Եւ գետք ոսկէգոյն բըղմամբ
ծիծաղածաւալ ուոգէ[1]։

---

[1] Թ. 319, 205ա. այս հատուածիս տեղ ունի.

Այս է տաճարըն կանդակէ.
Որ չէր հաստեալ ի հիմանէ.
Ընհնարէն կառուցեալ է,
Ի քսան փղոց գընացս առնէ։
Յոր հիացեալ Աղէքսանդրէ.
Ասաց վեհիցն այս դէմ շատ է.
Եւ բարկացեալ դըշխոյն յայտնէ,
Եւ զծանուցման նըշանն յայտնէ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՏԱՂ ՎԱՍՆ ՂԱՐԻՊՈՒԹԵԱՆ

### Ի ՏԷՐ ՄԵԼՔԻՍԵԴԵԿԷ

Ի քէն հայցեմ ստեղծաւղ Աստուած գըթական,
Զի ինձ պարգեւեսցես իմաստ տեսական,
Կամիմ երգել ըզբանս ղարիպութեան,
Որ լինի ի յօտար երկիր Հեռաստան։

Տրտմեալ եմ յարաժամ ի մէջ յաւտարութեան,
Եդեալ զարմին երեսին եւ կամ լալական,
Բաժանեալ սիրելեացս եղբարցս զատական,
Իբրեւ զբու միայն անկեալ կայ ի տան։

Եթէ քան զՍողոմոն է իմաստաբան,
Կամ իբր զՊղատոն եղեալ քաջաբան,
Խօսի իմաստութեամբ սոկրատանման,
Սաստեն նմա թէ լուռ կացիր, ո՜վ անբան։

Րապա թէ եւ լինին ուժեղ զաւրական,
Իբրեւ զարին Սամսոն տանն իսրայէլեան,
Եւ կամ զքաջն Մուշեղ, Վահրամ գովական,
Սապղարասեան նմա եւ յոյժ անպիտան։

---

Վերնագիրը մերն է. օրինակը (թ. 466, թղ. 291ա—բ Մատենադարանի) անվերնագիր է։ Տնատակ «Ի ՏԷՐ ՄԵԼՔԻՍ[եդեկէ]» կը յօդէ։

5. յարայժամ։ — 9. իմաստայբան։ — 10. քաջայբան։ — 12. լուր։ — 15. զքաչն։ — 16. նմայ։

Մեկնեալ ի սիրելեաց եւ ոչ ոք օգնական,
Ոչ քոյր եւ ոչ եղբայր 'ւ ոչ գութ մայրական,
Ոչ հայր որ հարցանէ թէ որդի սիրական,
Ոչ ազգ, ոչ ազինք 'ւ ոչ ասպնջական:

Երբեմըն թէ լինի ումանց խըրախճան,
Զղարիպն մեծարեն ի յիւրեանց սեղան,
Ցանկարծակի յիշէ զանցեալն եւ զներկայն,
Դառնայ իւր արտասուքն ի գոյն յորդ արեան,

Լալով նայի ի յաջ զի չեն իւր նման,
Նայի ի ձախ եւ լայ զաւուրքն որ անցան.
Հայի որ ամէն մարդ յուրախութիւն կան,
Եւ վայ կարդայ իւրեան անձին յատկական:

Քննողն երիկամանց Աստուած պիտական
Քննեալ փորձիւ գիտես զգործս որդւոց մարդկան.
Եթե զաշխարհս ամէնըն ղարիպին տանըն,
Նըմայ խոտան թուի, անարգ 'ւ անպիտան:

Ի սրտէն հառաչէ նա մորմոքական,
Ողորմուկ ձայն ածէ ըզօրն ի լման.
Ասէ զինչ կա՛յ ի հոս ակունք պատուական
Թէ ինձ տան սեփական նա գուժ է եւ գան.

Սիրոյ թէ պատահի ողորմելին այն,
Կու երկրորդի նորա տրտմութեան ղուսան,
Զի ոչ կարէ զծածուկն ասել յանդիման
. . . . . . . . . . . . . . . .

17. յօր. իլենց: — 18. քուր: — 22. յուրեանց: — 24. ի գուն: — 29. երիկամաց: — 30. որդոց: — 33. յօր. անորոշ երեւցած է ի սրտէն, կը կարդացուի նաեւ իր սրտէն: — 35. կա: պատուական: — 36. սեփհական: — 37. սիրտ:

# ԲԱՌԱՐԱՆ

ԱՄԲԱՐ, ա. ա՛մպէր, անուշահոտ նիւթ մը. գաղ. ambregris, գերմ. Ambra. «Կլափդ մուշկ ու ամբար անուշահոտ է». 33, 62։

ԱՆԱԽ, անահ. 38։

ԱՆՀԱՆԴՈՒՐԺԱԿ, անհանդուրժելի. 67։

ԱՆՃԱՆԱՉ, անճանաչելի. 58։

ԱՆՑԸՆՈՐ, անցաւոր. 68, 15։

ԱՊՈՒԽԱՑԱԹ, ա. ապ-ը-խայաթ. աղբիւր ջրոյն կենաց, աղբիւր կենաց. 63, 3։

ԱՃԷՊ, ա. ա՛ճէպ, զարմանք. ա՛ճէպէ գալմագ, զարմանալ, յապուշ կրթիլ. «Ես ի միս յաջէպ մնացի». 70, 10։

ԲԱՂՋԷ, տ. պաղչէ, պարտէզ. 39, 44 եւն։

ԲԻԶԱՐ ԼԻՆԵԼ, տ. պէզար օլմագ, ձանձրանալ, տաղտկանալ. 32, 35.

ԳԵՄ, պ. հէմ, այն ատեն. նմանապէս, հաւասարապէս, նաեւ, նոյն իսկ։ «Գեմ քունն է քնար կենաց». 65։

ԳԵՐԱԶԷՆ, իմա՛ գէրանտազէն. 76, 12։

ԳՈԼՈՇԻ, ԳՈԼՈՇԵՄ, Գոլորշի, շոգի, շոգիանալ. 64։

ԳՈՒՆԱՀ, պ. գիւնահ. ափսոս. «Եթէ մէկ պահ լռես, նա քեզ գունահ է». 36, 134.

ԴԱՄ, պ. դէմ, անգամ, ասկէ հէր դէմ, ամէն անգամ, միշտ. “Ջուապ կու տայ ինքն յամէն դամ.„ 42, 55:

ԴԻԼՊԱՐ, պ. դիլպէր, հմայիչ, սրտագրաւ, գեղեցիկ. “դիլպար բլպուլն հետ ծաղկընուն.„ 40, 9:

ԴՈՒՂԱՑ, ա. դուա, աղօթք, իղձք, մաղթանք, ողջոյն. այսօր ալ վանեցւոց բերանը կ՚արտաբերուի դուաղայ. “սալամ տուղայ տարան վարդին„. 40, 16:

ԴՈՒՐ, դասականի դուլ եւ դադարը. “չառնեմ դուր եւ դադար ի մէջ գիշերին„. 32, 50:

ԴՈՒՐԱՆԱԼ, մեղմիլ. 38, 35:

ԴՐՈՒՑ. (ի դրուց), դրսէն. “Հաւ ղումրին երեկ ի դրուց.„ 41. 33:

ԵՂԵԳՆԱԽՈՒՆԿ, խունկեղեգն. 63, 6:

ԵՐԳԵՀՈՆ, 74, 76:

ԵՐԵՐՈՒՄՆ, յերերմանի. 41, 39:

ԵՐՓՆԱԶԱՐԴ, գունազարդ. 29, 53:

ԶԱՐ, պ. զար. ողբ, հեծեծանք, լաց. “Զար եւ ֆիղան կանչեմ.„ 31, 22:

ԶԵՐԴ, ԶԵՐԹ, իբրեւ, որպէս. 35, 106. 76:

ԶԸՆԴԱՆ, բանտ. 69:

ԶՈՒԼԱԼ, ա. զիւլալ. ջինջ ջուր. ջուր կենաց. աղբիւր անմահութեան. 63, 3:

ԶՈՒՐՈՒՑՆԱՄ, խօսիմ. 60, 39:

ԶՕՐԵՄ, զդէմ ունել, յաղթել. 72, 29:

ԸՌՔԷՊ, ա. րիքեապ (ركاب), ասպատան. “զերծաւ կօշիկդ ի յըռքէպէ„. 69, 8:

ԹԱԴՊԻՐ, ա. թեդպիր. ճար, միջոց. հնարք. թեդպիր էթմէք, ճար ընել, հնարք ի գործ դնել. “դու քեզ սատ արա թադպիր քեզի„. 43, 77:

ԹԱՂԼԱԲԱՆԴ, պ. تكلغلند? շղաշատեռ. “կապել թաղաբանդ„. 64, 5։

ԹԱՌ, պ. تار, դալար, թարմ. փափուկ, քնքոյշ. “ադւոր ու թառ է դեղըն քոյ„. 39, 48։

ԹԱՓ, ուժգնութիւն շարժման, զարնուածքի. “զերծաւ ...թուրտ ի թափ ձեռայ բազկէ.„ 69, 8. Համմտ. “քննէ զյաջողուած ձեռին, զթափս բազկի.„ Ն. Շնորհ. Մեկն. Կաթ.։

ԺՈՒԿՍ, պ. ژكس?, մրմռումն առ ցասման, առ վշտին. “ժուկսելանելն իսկ պատեհ չէ„. 41,21։

ԻՍԿԻ, բնաւ, ամենեւին. 34, 91. ԻՍԿ, 41, 21։

ԼԱԼ, պ. لعل, 1. սուտակ, նռնաքար. 2. կարմիր գոյն. “ռանկս որպէս բղլաւ սպիտակ ու կարմիր.„ 35, 114։

ԼԱՏԻՖ, ա. لطيف, ադուոր, քաղցր, վայելուչ, շնորհալի. “դու ես լեզուով լատիֆ եւ մտաւք արթուն.„ 34, 83։

ԼՈՒՍԱՃԱՆՃ, իմա՝ լուսաճաճանչ. 77։

ԽԱԼՈՒԷ, իմա՛ հալուէ, 63, 7։
ԽԱՄՐԱԹ, տե՛ս ՀԱՄՐԱԹ։
ԽԻԿԱՐ, իմաստուն. 75, 9։

ԾԱՓԵԼ, ծափս հարկանել. խնդալ. “տեսեալ զվարդն ուրախ եւ սիրտն ծափէր.„ 32, 45։

ԾԻՐԱՆԱՊԱՃՈՅՃ, ծիրանազգեաց. 76։

ԿԱՅԾ, սուտակ հրագոյն, ակն պատուական. “ծիրանապաճոյճ ի կայծէ.„ 76։

ԿԱՑՆԱՀԱՐ, *կացինով կտրուած, կացնահատ.* 64, 2։

ԿԱՖԱՑ, *թ. ղաֆիյէ* (قافية) *յանգ ոտանաւորի. յետինք կ'իմանան՝ նոյնայանգ չափական գրութիւն* 69 *են*։

ԿԼԱՓ, *դունչ, կզակ. "կլափդ մուշկ ու ամբար անուշահոտ է."* 33, 62։

ՀԱՍԻԱԹ, *թ. խասիյէթ. յատկութիւն, սեպհականութիւն. "օձու հասիաթն է շատ".* 71, 6։

ՀԱՍՐԱԹ, *թ. հասրէթ, կարօտ, անձկութիւն. "բամք թռչունք երկնիցն քեզ հասրաթ է."* 36, 132։

ՀԱՒՍԱՐ, *հաւասար. "Ծրարեմ զքեզ յիմ հոգիս հաւսար,* 33, 67։

ՀԷՆՑ, *այն ինչ.* 32, 54։

ՀՈԳՍ, *հոգք.* 68։

ՀԻՐԻԿ, *անուշահոտ բոյս մը.* 63, 7։

ՂԱՐԻՊ, ՂԱՐԻՊՈՒԹԻՒՆ, *թ. ղարիպ. պանդուխտ նժդեհ.* 58։

ՂԱՖԱԶ, *թ. ղաֆէս. վանդակ, գառագեղք.* 68, 4։

ՂՈՒՄՐԻ, *թ. ղումրի, տատրակ.* 31, 28։

ՂՈՒՍԱՑ, *թ. ղուսուր. տխրութիւն, տրտմութիւն. նեղութիւն, անձկութիւն.* 60, 40։

ՂՐԱՐ, *թ. ղարար* (قرار), *կայք, դադար, հանգիստ, հանդարտութիւն. ասկէ ղարար էթմէք, բնակիլ. հաստատուիլ. "որ գայ վարդըն սիրով առնէ ինձ ղրար.* 32, 34։

ՃԱԽ, *ճահիճ.* 66։

ՃԱԽԱՌ, *ճախարակ.* 76, 12։

ՄԱՀԱԲՈՍ? *մահաբեր. "մատուցեր տեղ մահաբոս."* 67, 1։

ՄԱՆՐԱԾԱՒԱԼ, 29, 56։

ՄԸՐՂԻՍԱՀԱՐ, պ. մէրղզէնէր. (مرغ سحر) թռչուն առաւօտու, սոխակ. "ով քաղցրաձայն մըրղիսահար." 39, 45։
ՄԸՐԸՐԵՄ, 64, 4։

ՆԵՂՈՍ? 67։
ՆՄԱՆԱԿ, նման, "ոչ ոք չըկայ նմանակ." 56, 95։

ՇԱԲԱՇ, պ. շապաշ, վա՜շ, յա՜ւ, ապրիս եւն, bravo! "որ քեզ ասեն յոլով շաբաշ." 65, 14։
ՇԱՏԼԸԽ, թ. շատլըգ, ուրախութիւն, ցնծութիւն, զուարթախօսութիւն. "շատլըխ կենէ ի վրայ վարդուն." 40, 10։
ՇԱՐԲԱԹ, պ. շէրպէթի, շատ նուրբ բանուած պաստառի տեսակ մը. 63, 3, 5։
ՇԱՀ, պ. շահ, թագաւոր. 32, 41։
ՇԱՄԱՆԴԻԱՂ, մանրամաղ փոշի. 64, 5. 64, 11։
ՇԱՄՐԱՍ "Շամրաս ծաղիկ եւ քրքումն." 63, 6։
ՇԻՐԻՆ, պ. շիրին, քաղցր, անոյշ, գեղեցիկ. "շիրին լեզու," 34, 91. "շիրին շարբաթ կապել". 63, 5։
ՇՆՉԱԼ, շնչել. 70, 4։
ՇՈՒՐ տալ, գալ. 38. 69, 1։

ՉԵԿ ՏԱՐԻ, նահանջ տարի. 66։

ՊԱԼԱՍԱՆ, բալզամ. 36։
ՊԱՐՏԱԿԻՄ, ծածկուիլ. "պարտակեցաւ ի թըփէն." 56, 104։
ՊԻՏ, պ. բէդ? գահ. կամ թ. բէդ? արագ, փութով. "Սքանդար դու քեզ պէտ արայ." 75, 4։

ՋՈՒԱՊ, թ. ճէվապ (جواب) պատասխան. "Ջուապ կու տայ ինքն յամէն դամ." 42, 55։

**ՌԱՆԿ**, *պ. րէնկ, գոյն*. 35, 114։
**ՌԱՀ**, *ճանապարհ*. "*Ռահ դասուց հրեղինացն*." 29, 58։
**ՌԱՀ**, *ուրախ*, "*Ռահ սիրով ընդ քեզ կու գամ*." 42։
**ՌԱՏ**, *իմա՛ առատ*. "*ռատ Յորդանանըն գայ*." 56, 111։

**ՍԱԴԱՓ**, *ա. սատէֆ. սատափ*. 35, 113։
**ՍԱԼԱՄ**, *ա. սէլամ, ողջոյն*. "*սալամ դուղայ տարան վարդին*." 40, 16։
**ՍԱԽՏԱԴԻԼ**, *պ. սախթ-դիլ, խստասիրտ*. "*Թշուառաբախտ ու սախտադիլ*". 66, 8։
**ՍԱՀՐԱՑ**, *ա. սահրա, դաշտ, բացավայր*, "*շրջի լերունքդ 'ւ յամէն սահրայ*." 38, 9։
**ՍԱՊՐ**, *ա. սաբր, հալուէ* (aloès), *ցմախ, դառն տունկ մը*. "*Նա սապր ու լեղի*". 32, 33։
**ՍԱՐԱՏՂԱՆԱՑ**, *ա. սէրէթան. խեչեփառ, խեցգետին աստեղատուն*. 66, 9։
**ՍԱՐԴ**, *սարդիոն*, **ՍԱՐԴԻԱԿԱՆ**, *սարդիոնէ*. "*յեռեալ եւ ընդ սարդիական*" 29, 51։
**ՍՈՍ, ՍՈՐ**? "*աւաղ չարեացն սոր եւ սոս*." 67, 3։
**ՍՈՒՉ**, *թ. սուչ. մեղք, յանցանք*. "*զիս մի խոցեր դու առանց սուչ*." 41, 32։ *Թերեւս այսպէս կարդալու է* Կոստ. *Երգ. ԺԳ.* 13. *հոս բառն, որ անիմանալի մնացած է*։

**ՎԱՀԵՄ**, *վախեմ, երկնչիմ*. 38։

**ՐԱԶ**? "*րազ եւ նուազ արարած*." 51, 22։
**ՐԱՄ**, *երամ*. 36։
**ՐԱՄԵԱԼ**, *զառամեալ* (?), "*րամեալ խիստ խեղճ 'ւ ողորմ նա կենայ*." 59, 14։
**ՐՈՏԵԼ**, *ժողվել*. "*րոտեա դաւանողըս քո*." 57, 127։

**ՐՈՏԵԱԼ**, *կարօտեալ*. 29, 66. "*րոտեալ ծարաւիմ հոգւով: Րոտեալ սիրով քո կու այրիմ*". 39, 36:

**ՓԱՐԴԷ**, պ. փէրդէ. *վարագոյր*. 38, 15:

**ՔԱՄԻ**, *հով*. 75:
**ՔԱՖՈՒՐ**, պ. քեաֆուր, *քաֆուր, սպիտակ անուշահոտ խէժ մը, որուն սպիտակութիւնը բանաստեղծք կ՚առնուն նմանութեան. ուրեմն հոս* քաֆուր վարդ, *սպիտակ անուշահոտ վարդ*. 38, 20. 43:

**ՕԳՆ**, *յօդն գամ, օգնութեան գալ*. 72, 37:

**ՖԻՂԱՆ**, *ֆըղան*, պ. ֆիղան, *աղաղակ, գոչումն*. "*զար եւ ֆիղան կանչեմ*." 31, 22. 38, 17:

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գաղէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց պատմագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց: 1890: Եջ 85+59: Փր. 1.25

Բ. Մենեվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1890: Եջ 50: Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Եջ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Տաճ Դ., Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Եջ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի: 1892: Եջ Դ+272: Փր. 3.—

Զ. Տրվիչ Ա. եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Եջ 82: Փր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892:` 89: Փր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Եջ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Փր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըննկատիպ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտկ. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մաս Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրքհերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 2.5

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աքգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած). գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խաչաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն հայոց գրչութեան արուեստին: (10 զինկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ.

Խրկար եւ իւր իմաստութիւնն, Ազապետոս եւ իւր Ցորդորականք առ Ցուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վեբեր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ծ+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչատեան Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մենեվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հատ Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գելցեր Հ., Ակզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանփիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանփիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Ադոնեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան քաղելական-աարեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խաչաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պետերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պետերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433: Փր. 5.—

ԾԶ. Ադոնեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Փր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բաբգէն Ծ. Վ., Եղիշէ քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 7.—

ԺԸ. Ակինեան Հ. Ներսէս, Ա. Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 60: Բ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Փր. 1.50

ԺԹ. Ակինեան Հ. Ներսէս, Զաքարիա Եպիսկոպոս Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Փր. 1.—

---